ԱՐՏԱՇԵՍ ՂԱԶԱՐՅԱՆ

# Հայոց տառեր

Հայոց տառեր, հայոց տառեր,
Զորեղ, զորեղ ձեր ուսերին
Ինչեր ասես, որ չեք տարել։
Ձեզ այրել են, մատնել հրին,
Փորձել ընթացքը խափարել։

Չեք սասանվել դավ ու ցավից,
Դժվար ժամին հույս եք տվել,
Մթնում խավար լույս եք տվել,
Եվ միշտ տոկուն ձեր ուսերին
Մեր մեծ հույսի ու փրկության
Հրաշք փյունիկ հավքն է թառել,
Հայոց՝ տառեր,
Հայոց տառեր...

# Լուսաբաց

Լիճը զարթնեց, ալիք տվեց ու ծփաց,
Լուսաբա՜ց է, լուսաբա՜ց է, լուսաբա՜ց։
Հավքը զարթնեց, թևին տվեց, գեղգեղաց,
Լուսաբա՜ց է, լուսաբա՜ց է, լուսաբա՜ց։
Գետը զարթնեց և ցած վազեց սրընթաց,
Լուսաբա՜ց է, լուսաբա՜ց է, լուսաբա՜ց։
Զարթնեց ծառը ու սոսափեց ցողաթաց,
Լուսաբա՜ց է, լուսաբա՜ց է, լուսաբա՜ց,
Զարթնեց նաև Շուշան քույրս և ժպտաց,
Լուսաբա՜ց է, լուսաբա՜ց է, լուսաբա՜ց։

Լուսանկարը՝ ՎԼԱԴԻՄԻՐ ՍԱՐՈՅԱՆԻ

# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից

## Այս համարում 1•86



Հանձնված է տպագրության 28.XI.1985 թ.: Ստորագրված է տպագրության 30.XII. 1985 թ.: ՎՖ 09270: Թուղթ օֆսեթ, 70×100 1/16: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 69532: Պատվեր 2396: Գինը՝ 15 կոպ.:

Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:

Сдано в набор 28.XI.1985 г. Подписано к печати 30.XII.1985 г. Формат 70×100 1/16. ВФ 09270. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 69532. Заказ 2396. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

ԳԵՎՈՐԳ ՍԱՐԳՍՅԱՆ




Մութն ընկել էր, երբ դասերը պատրաստելուց հետո Զորայրը մոտեցավ լուսամուտին ու ճակատը ապակուն կպցրած՝ նայեց դուրս: Նայեց, նայեց ու հանկարծ ուրախ բացականչեց.

— Ձյուն է գալիս...

Գիրքը թևի տակ դնելը, ընկերոջը ցտեսություն ասելն ու չորրորդ հարկից մի քանի աստիճան միանգամից ցած թռչելով փողոց դուրս գալը մի ակնթարթ եղավ:

Նախ՝ ձյունը ոտքով դես ու դեն ցրեց, որ պարզի՝ սահնակով կարելի՞ է սահել, թե՝ ոչ, ապա թափ առավ, մայթի վրա սահեց, հետո կռացավ ու արագ-արագ ձնագնդեր պատրաստեց: Մեկը մյուսի ետևից ձնագնդերը տարբեր նշանակետերի խփելուց հետո մի մեծ ու պինդ ձընագունդ էլ պատրաստեց և ձեռքի մեջ ծանր ու թեթև անելով՝ նշանակետ փընտրեց: Նշանակետ չգտավ: Ձնագունդը վեր շպրտեց ու հարմար պահը որսալով՝ գըլխով խփեց, ցաք ու ցրիվ արեց: Հետո կանգնեց մի ծառի տակ, ցնցեց այն ու ամբողջ ձյունը թափեց իր վրա: Մի երկու ծառ էլ ցնցեց և այդպես՝ Ձմեռ պապի դարձած, ձեռքերը վերարկուի գըրպաններում՝ գլուխը վեր տնկեց ու բերանով փաթիլներ բռնելով քայլեց տուն:

Փաթիլներն իջնում էին տղայի դեմքին ու արագ հալվելով՝ դառնում ջրի փոքր կաթիլներ: Հետո այդ փոքր կաթիլները շատանում էին, միանում իրար, դառնում մեծ կաթիլներ ու սահելով ցած՝ մտնում տղայի օձիքից ներս: Սառը կաթիլներից տղան խուտուտ զգալով ցընցվում էր ու բարձրաձայն ծիծաղում:

Փողոցի անկյունում, մեծ լապտեր ունեցող սյան մոտ Զորայրը կանգ առավ: Լապտերի լույսը մթության մեջ թոնրի նման փոս էր առաջացրել, վերևը՝ նեղ, ներքևը՝ լայն: Իսկ այդ լույսի թոնրի մեջ, թիթեռնիկների նման պարում էին ձյան փաթիլները: Տղան էլ մտավ թոնիր, նայեց վեր, տեսավ թիթեռնիկ-ձյան փաթիլների պարը, ժպտաց, զարմացավ, հիացավ ու այդպես վեր նայելով էլ մնաց կանգնած:

Իրար առաջ կտրելով, ձյան փաթիլները թոնրի բերանից մտնում էին ներս, օրորվելով աջ ու ձախ շրջվում՝ կարծես գլուխ էին տալիս շուրջը եկողներին, հետո ուղղվում էին և զույգ-զույգ կամ առանձին-առանձին միանում ընդհանուր պարին...

Ինչ-որ մեկը ձյունը ճռճռացնելով կանգ առավ:

«Սա էլ է ուզում պարահանդես նայել»:

Եկողը կանգնել էր ու ձայն չէր հանում:

«Շշմել է: Երևի առաջին անգամ է տեսնում: Կգնա տուն, փոքր եղբորը կամ քրոջը կպատմի, ծնողներին էլ կպատմի: Իսկ եթե տարիքով մարդ է՝ իր երեխաներին կպատմի ու այնպես կչափազանցի, որ կդարձնի հեքիաթ: Մեծերն էդպես են. մի անգամ ուսուցիչը ծնող կանչի՝ ամբողջ տունը սգի մեջ է: Սկսում են պատմել, որ իրենք այդ տարիքում աշխարհի ամենախելոք, աշխարհի ամենալավ սովորող, աշխարհի...»:

— Ի՞նչ է պատահել, տղա ջան,— հարցրեց կանգնածը, և Զորայրը ձայնից հասկացավ, որ իր հարևանը ծեր մարդ է:

«Ափսոս, չի տեսել»,— մտածեց Զորայրն ու արագ պատասխանեց.

— Ոչինչ էլ չի եղել, պապիկ, կանգնել եմ, էլի...

— Բա, էս ցրտին ինչո՞ւ ես կանգնել:

«Ասե՞մ, թե՝ չասեմ... ասե՞մ, թե՝ չասեմ»: Մի քանի վայրկյան տատանվելուց հետո ասաց.

— Ձյուն տեսել եմ, բայց փաթիլների պարահանդես չեմ տեսել:

— Է, ձեր ուշքն ու միտքը պարն է: Քեզ նման մեկն էլ մեր տանը նա. ժամերով մագ է լսում ու տռճիկ տալիս: Դաս սովորեք, այ երեխեք, հետո շատ կզըղջաք:

Ծերուկը հազաց, որոշ ժամանակ լռեց, բայց չգնաց:

«Ուզում է մի քիչ էլ խրատ բաներ ասել»:

Ծերուկը մի անգամ էլ հազաց ու բոլո-

րովին ուրիշ ձայնով ասաց.

— Հիմա դրանց պարը, ճիշտ է, սիրուն է, բայց որ մի թեթև քամի լինի ու փաթիլները մանրանան՝ այ, պարը էն ժամանակ տես:

Տղան զարմացած նայեց ծերուկին և ուզեց հարցնել, թե ինչո՞ւ քիչ առաջ ուրիշ բան էր ասում, հիմա՝ ուրիշ: Ծերուկը, հավանաբար, հասկացավ տղային ու բարեկամաբար մատը թափ տալով ասաց.

— Բան չասես, թևիդ տակի գիրքը չէի տեսել,— հետո մի փոքր լռեց, մի ոտքից մյուսին հենվեց ու դժգոհ ավելացրեց,— էս անտեր ոտքերս շուտ են մրսում, թե չէ ես էլ կողքիդ կկանգնեի:

Ու ձյունը ճռճռացնելով գնաց: Զորայրը մի քիչ նայեց նրա ետևից ու նորից գլուխը վեր տնկեց:

«Գուցե փաթիլները մանրանան ու քամի՞ լինի»:

Փաթիլները մանրանալու փոխարեն ավելի մեծացան, բայց և թեթև քամի ընկրավեց: Շքեղ հագուստով, արտակարգ գեղեցիկ մի փաթիլ երևաց: «Մենապարուհին է»:

Նրանից անմիջապես հետո երևաց մի ուրիշը, նույնպես շքեղ ու գեղեցիկ, բայց ավելի խոշոր, քան՝ առաջինը:

«Մենապարողն է»:

Մենապարուհին ու մենապարողը, իրարից հավասար հեռավորություն պահելով մտան ընդհանուր պարի մեջ: Մյուսները հարգանքով ետ էին քաշվում, որ տեղ ազատեն նրանց համար: Զույգը պարողների միջով սահելով՝ մի քանի պտույտ արեց, հետո փորձեց ավելի բարդ շարժումներ անել, բայց թույլ քամին չըկարողացավ նրանց վեր բարձրացնել, և զույգը ամոթահար ցած իջավ ու նստեց գետնին...

Ձյան ճռճռոց լսվեց: Ճռճռոցը մոտեցավ ու անցավ:

«Ափսո՞ս»:

Քիչ հեռու ճռճռոցը կանգ առավ ու ետ եկավ:

«Տեսավ: Ծե՞ր է, թե՞ երիտասարդ: Նայե՞մ: Միայն դասերից չխոսի»:

Զորայրն ուզեց նայել, թե ով է կանգնած իր կողքին, բայց այդ վայրկյանին քամի՞ն ուժեղացավ, թե՞ փաթիլները մանրացան՝ դժվար է ասել. հանկարծ պարահանդեսում ամեն ինչ խառնվեց իրար: Պարողները բաժանվեցին մեծ ու փոքր խմբերի, սկսեցին արագ վեր ու վար անել կամ էլ սատանի քամու բերանն ընկածի նման շրջանաձև պտտվելով՝ վեր բարձրանալ: Երբեմն խմբերը միանում էին իրար, մեղրաճանճի պարսի նման օդում կախվում, հետո արագ հեռանում իրարից ու սրընթաց պարի թափից թոնրի պատերը ծակելով, դուրս թռչում, կորչում մթության մեջ: Փաթիլները ոչ միայն թոնրի պատերը ծակելով դուրս էին թռչում, այլ դրսից օտար փաթիլներն էլ պատը ծակում, ներս էին խցկվում ու ավելի խճճում պարը: Ամեն մեկն ուզում էր արտառոց որևէ բան անել: Պտուտակի նման պտտվում էին, գնդակի նման ցատկոտում, կպչում էին իրար, դառնում թռչուններ, կենդանիներ կամ ծաղիկներ: Երբեմն էլ հուլունքի նման շարվում էին իրար կողքի, երկար շղթա կազմում ու ալիքների նման վեր ու վար անում, հետո մի ակնթարթում շղթան փշրվում էր բազմաթիվ փոքր շղթայիկների ու ցրվում պարահանդեսով մեկ:

— Այ, այ, այ, կարծես գժվեցին,— ծիծաղելով ասաց մի ձայն՝ հենց տղայի կողքին, ուղիղ ականջի տակ:

Զորայրը խիստ զարմացավ այդ հանկարծակի ծիծաղից: Նա բոլորովին մոռացել էր, որ իր կողքին մեկը կանգնած է:

«Եթե այսքան ժամանակ կանգնած է, ուրեմն...»:

Ծիծաղը մեծահասակի չէր, միջին տարիքի տղամարդու կամ կնոջ ծիծաղ էլ չէր: Ընդհանրապես դա բոլորովին ուրիշ ծիծաղ էր: Անցավ մի ակնթարթ, երկու ակնթարթ, երեք, բայց՝ ոչ մի ձայն: Անցավ մի հավերժություն, երկու հավերժություն, երեք հավերժություն, և վերջապես...

— Հիանալի պարահանդես է, ապշելու բան է՝ հուլունքներ, մեղուների պարս, գնդակներ,— և՝ կրակոտ, մտերիմ, բազմագույն ծիծաղ:

«Մեղուների պարս, հուլունքներ, գընդակներ...»:

Աղջկա ծիծաղից Զորայրի շուրջը դարձավ տաք ու հաճելի, ոտքերն էլ տաքացան, գրպանների խորքերը խցկված մատներն էլ... «Բարձրահասա՞կ է, թե կարճահասակ, աշխո՞ւյժ է, թե՞ սուս ու փուս... շալով պինդ փաթաթվա՞ծ է, թե վերարկուի կոճակները բաց է թողել ու ցրտից դողում է մեր դասարանի աղջիկների պես»: Տղան փորձեց երևակայությամբ պատկերացնել աղջկան...



Նկարը՝ ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Հավանաբար, Զորայրի դեմքի տարօրինակ ժպիտն էր պատճառը կամ էլ՝ ոչինչ չտեսնող հայացքը, որ փաթիլներից մի քանիսը դադարեցրին պարը, մոտեցան նրան և ուշադիր նայեցին աչքերի մեջ: Նայեցին, նայեցին ու հեռացան: Քիչ անց, մի քանի փաթիլ փսփսում էին տղայի ականջին.

— Ինչո՞ւ ես շշմել, մի անգամ նայիր, կողքիդ կանգնած է:

«Անհարմար է»:

— Ինչո՞ւ է անհարմար, սովորականի պես նայիր:

«Ինչպե՞ս է «սովորականի պես»-ը, որ նայեմ»: Զորայրին բոլորովին դուր չեկավ, որ փաթիլները խառնվում են իր «գործերին»: «Ո՞վ է նա, որ նայեմ, անծանոթ է, չէ՞, կանգնել է, թող կանգնի»:

— Գուցե անծանոթ չէ՞, նայիր, էլի, հո քեզ չի՞ ուտի,— համբերությունից դուրս եկած դժգոհեցին փաթիլները:

«Չի ուտի, բայց անծանոթ է, չի՞ ասի՝ ինչո՞ւ նայեցիր»:— Ձեռքերը գրպաններից հանելով ու էլի ներս խցկելով՝ իր հերթին դժգոհեց տղան:

— Չի ասի, չի ասի, դու նայիր,—պնդում էին փաթիլներն ու քիչ էր մնում տղայի ականջը մտնեն:

«Կասի»:

— Չի ասի:

«Կասի»:

Փաթիլները նեղացած փնթփնթալով հեռացան:

«Գնա՞մ, թե՞ մնամ, երևի մայրս արդեն անհանգստանում է»:

— Ես առաջին անգամ եմ այսպիսի



բան տեսնում,— լսվեց աղջկա ձայնը:
— Ես էլ,— հազիվ լսելի պատասխանեց Զորայրը:
— Ձեր գրքի պատճառով մոտեցա ու… ահա վերցրեք:
Զորայրը շրջվեց ու նայեց աղջկան: Աղջիկը ճիշտ և ճիշտ իր պատկերացրած աղջկան էր նման, միայն ավելի գեղեցիկ էր:
— Ես կանգառից տեսա, որ ձեր թևի տակից գիրքը ընկավ, բայց դուք չզգացիք: Մտածեցի, որ ձյունը կծածկի, ու մոտեցա: Գիրքը վերցրի, նայեցի վեր, ու ես էլ մոռացա գրքի մասին,— աղջիկը բարձրաձայն, ուրախ ծիծաղեց:
Զորայրի կաշկանդվածությունը անցավ:
— Շնորհակալ եմ,— ժպտալով ասաց նա, գիրքը վերցրեց ու սպասեց, որ աղջիկն էլի որևէ բան ասի:
Աղջիկը ժպտում էր ու ոչինչ չէր ասում:
— Գնամ, ձյունը կտրվեց, պարահանդեսն էլ վերջացավ,— ի վերջո խոսեց աղջիկը, շրջվեց ու դանդաղ հեռացավ:
Զորայրն իսկույն հասկացավ, որ եթե հենց հիմա ինքը որևէ բան չանի, ապա նա, որն իր պես կարողացել է փաթիլների պարահանդես տեսնել, կգնա ու իրենք էլ երբեք… Միլիոնավոր բառեր միանգամից խառնվեցին Զորայրի գլխում, և նրանից յուրաքանչյուրը ուզում էր, որ տղան իրեն արտասանի աղջկա համար, որ միայն ինքն է հասկանալի աղջկան և աղջիկը հենց իրեն էլ սպասում է, որ կանգնի ու սիրալիր խոսի տղայի հետ: Աղջիկն արդեն երրորդ քայլն էր անում, բայց տղան դեռ ոչ մի բառ չէր ընտրել: Հանկարծ տղայի միտքը հրաշքով պայծառացավ, ու նա միլիոնավոր բառերից ընտրեց ամենապարզ, բազմաթիվ անգամ կրկնված ու սովորական բառերը: Գուցե այդ բառերը այնքան էլ չէին համապատասխանում իրականությանը, բայց նա այլ ընտրություն չուներ և…
— Գնանք, ես էլ եմ այդ կողմն ապրում,— ժպտալով ասաց նա, մոտեցավ աղջկան ու քայլեց նրա կողքից դեպի… իրենց տան հակառակ կողմը:
Մի քանի տարի անց, երբ աղջիկը պատահաբար իմացավ, որ Զորայրը իրենց տան մոտ չի ապրում, բոլորովին չնեղացավ, ավելին, շատ ուրախացավ, որ տղան այդ նշանավոր պարահանդեսի օրը շփոթել է իրենց տան տեղը:

## ՈՒՍՈՒՑՉԻ ՕՐԱԳՐԻՑ

ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆ

# Ինքնահայտնագործում

Կիսամյակի վերջում, կրկնության ժամին, դիմում եմ դասարանին.
— Մտածեք ու պատասխանեք. մեր անցած թեմաներից ո՞րն է ձեզ ամենից ավելի դուր եկել և ինչո՞ւ:
Փոքր անց լսում եմ պատասխանները, ներքուստ իմ առջև դնելով հարց՝ աշակերտներից որի՞ պատասխանն է լավ և ինչո՞ւ:
Բնականաբար պատասխանները տարբեր են՝ տարբեր հիմնավորումներով:
Ինձ ամենից շատ գրավում է սևաչ տղայի պատասխանը. «Ինձ ամենից շատ դուր է եկել Հրանտ Մաթևոսյանի «Հացը» պատմվածքը, բայց հիմա չեմ կարող ասել, թե ինչո՞ւ է դուր եկել…»
Տղան պահանջում է ժամանակ տալ, որպեսզի ինքը տանը նորից կարդա այդ պատմվածքն ու եզրակացություն անի, թե ինչո՞ւ է իրեն դուր եկել այդ պատմվածքը:
Հաջորդ ժամին նա բերում է իր պատասխանը.
— «Հացը» պատմվածքը ինձ դուր է գալիս նրա համար, որ…. նրա մեջ ես տեսնում եմ ինձ… Այո՛, այդ ծույլ տղան ինչ-որ չափով նման է ինձ, ես էլ հաճախ, երբ խուսափում եմ տան աշխատանքներից, բացում եմ դասագիրքը կամ սկսում եմ նկարել, որպեսզի ծնողներս ինձ չպարտադրեն աշխատել,— ու տղան ժպտում է:
Ես էլ եմ ժպտում:
— Ճիշտն ասած, ես էլ եմ այդպիսին,— արձագանքում է աշակերտներից մեկ ուրիշը:
— Ես էլ,— անկեղծանում է երրորդը:
— Այո՛, այդ պատմվածքը ինձ ամենից

շատ է դուր գալիս, որովհետև նրա մեջ ես տեսնում եմ ինձ ու իմ ընկերներից շատերին, պատմվածքը ինձ տանում է դեպի իմներքնաշխարհի գաղտնի անկյունները, ցույց տալիս առաջին հայացքով անտես ծալքերը:



Դասընկերներից շատերն էլ համաձայնվում են տղայի հետ, ու տղայի պատասխանն էլ ինձ նուրբ է թվում, ինչպես Հրանտ Մաթևոսյանի «Հացը» պատմվածքը:

## Մեծահոգությու՞ն

Ամեն անգամ գրականության կաբինետ մտնելուց առաջ աշակերտները շարք կանգնած սպասում են ինձ, որ դուռը բացեմ:

Այս լավ տղան ամեն անգամ շարքի առջևում է, ու ես դուռը բացելիս կատակում եմ նրա հետ:

Բայց ահա այսօր Արմենը իր տեղը զիջել է դասընկերներից մեկին, որի հետ ես չեմ կարողանում կատակել, ինչպես Արմենի հետ:

Ես ինձ լավ չեմ զգում. ամեն մեկը չէ, որ իրավունք ունի շարքի առջևում կանգնել: Շարքի առջևում կանգնել նշանակում է՝ շարքը առաջնորդել, իսկ այս տղան ունի ֆիզիկական առավելություն, այդքանը միայն, մյուս հարցերում զիջում է բոլորին: Ես փախցնում եմ հայացքս «առաջնորդ» դարձած տղայից ու մտածում եմ, որ նա շարքը կարող է տանել ոչ ցանկալի ուղղությամբ:

Ես Արմենին մտովի կրկին բերում եմ շարքի առաջին տեղը:

Ես մի այնպիսի հայացքով եմ նայում շարքին, Արմենին ու տղային, որով մոտավորապես այս եմ ասում.

— Արմեն, այս անգամ վտանգավոր է քո մեծահոգությունը, դու մեծահոգությամբ շարքի առջևից գնացողի քո տեղը զիջել ես մեկին, որն իրավունք չունի կանգնել շարքի առջևում. չէ՞ որ նրա մասին մտածելով՝ առաջ պետք է մտածել շարքի մասին... քո մեծահոգությամբ դու ճանապարհ ես տալիս անարժանին: Դու էլ ես մեղավոր, շա՛րք, դու էլ չպետք է հանդուրժես, որ արժանավորը ետևում է, անկախ նրանից՝ դա իր տեղը զիջողի մեծահոգությա՞մբ է եղել, թե՞ մյուսի առաջ նետվելու հանդգնությամբ:

## Զուլալ էություն

Առավոտյան դպրոց եմ գնում:

Գյուղական փողոցի մեջտեղով, դիմացից, գալիս է մի փոքրիկ երեխա՝ երեք, թե չորս տարեկան: Ես գորովանքով նայում եմ նրան:

Ահա քեզ սիրուն, զուլալ, մաքուր, լուսաշաղախ էություն...

Երեխայի ետևից մեքենայի ձայն է լսվում, ու երեխան տագնապահար վազում է դեպի ինձ:

Թվաց, թե մեքենայացումից խուճապի մատնված նախնականությունն էր, որ վազեց դեպի ինձ՝ պաշտպանության աղերսով: Մանկանը թվաց, թե ես զորավոր եմ ավելի, քան մեքենան: Ես գգվեցի, շոյեցի նրան: Թվաց,



թե ցողոտ ու վայրի նախնականությունը փրկվեց չոր մեքենայացումից:

Նկատեցի, թե մանկան շփոթ աչքերը ինչպես մաքրվեցին վախից ու մանուկը ինչքան

հաղթական հայացքով նայեց անցած մեքենայի ետևից:
Նրա ամեն աչքը մի երկինք էր, ամեն աչքի մեջ մի արև էր, ու իմ օրը պայծառացավ կրկնակի:

## Մատուռի լեգենդը

Մայիսյան օր է: Բեռնատարով եղևնիներ են բերել, որպեսզի գյուղը ծառապատենք:
Ես վերցնում եմ յոթ եղևնի ու տանում մոտակա Եռակնյա աղբյուրի վերևում կանգնած մատուռի մոտ տնկելու:
Դպրոցի մոտ խաղացող երեխաներից հինգվեց տղա են ինձ մոտ, ու ես հանձնարարում եմ ծառերի համար փոս փորել:
— Դուք այս մատուռը շատ եք սիրում, չէ՞,— հարցնում է Մերուժանը:
— Շա՜տ...,— ասում եմ ես:— Բայց ոչ թե նրա համար, որ սա կառուցված է իմ պապի պապ, «Նարեկ» կարդացող Հովակիմ Հովսեփի հիշատակին, այլ այս մատուռի հետ կապված լեգենդի համար...
Մատուռի պատմությունը հետևյալն է: Անցյալ դարի երեսուն թվականին, երբ մեր գյուղացիների նախնիները Բյուրակնյա աշխարհից գաղթում են այստեղ, նրանց հետ գալիս է նաև ինքը՝ Հովակիմ Հովսեփը, գալիս է՝ թողած Մշո Սուրբ Կարապետ վանքը: Ժամանակ անց մարդը զղջում է՝ իզուր գաղթեցի, իմ գաղթելով ես մի զինվոր պակասեցրի կորուսյալ երկրում ու հեշտացրեցի թշնամու գործը: Նա իր մահից առաջ որդիներին կտակում է մի մատուռ կառուցել և մատուռի աշտանակի մոմերը վառել Մշո Սուրբ Կարապետ վանքի մոմերից բերված բոցով: Հոր մահից հետո որդիները գործի են անցնում. կառուցում են մատուռը, դռնաորմին գրում. «ՅԻՇԱՏԱԿ ՅՈՎԱԿԻՄ ՅՈՍԵՓՆ 1908»:
Տղաներից մեկը խուրջինի մեջ մոմեր լըցրած գնում է մինչև Մշո Սուրբ Կարապետ վանքը, այնտեղ վառում է մոմը ու բոցը մոմից մոմ տալով՝ այծենակաճի տակ պահած, բերում-հասցնում է տեղ ու վառում աշտանակի առաջին մոմը, կրկնելով հոր պատգամը: «Կվառեք Մշո Սուրբ Կարապետի աշտանակի բոցից ու բոցը վառ կպահեք: Աշխարհում կարող է չարագործը փչի Սուրբ Կարապետի աշտանակների մոմերը, դուք կըպահեք նրանց բոցը, որ հետո տանեք վերավառելու»:
Ու բոցը պահվում է մինչև այսօր:
— Ուրեմն, այս մատուռի մոմերի վրա Մշո Սուրբ Կարապետի մոմերի բոցն է, հա՞,— հարցնում է տղաներից մեկը,— վանքը հիմա չկա, իսկ մոմերի բոցը դեռ կա:
— Մի օր կվերակառուցվի վանքն ու իր իսկ բոցով կրկին կվառվեն իր նոր աշտանակները,— հավատացնում եմ ես:— Ինձնից են կոչել Մշո Սուրբ Կարապետ վանքը, իսկ այս մատուռը կոչում են նաև Եռակնյա մատուռ: Ինն ակով աղբյուր է եղել Մշո Սուրբ Կարապետ վանքի տակ, իսկ այս մատուռի տակ Եռակնյա աղբյուրն է:

## Ձնծաղիկները

Ձմեռային մի ձյունառատ օր ուսուցիչը դպրոց էր գնում:
Դեպի դպրոցի մուտքը տանող ձյան մեջ փորված նեղլիկ կածանով իրար ետևից գընում էին հինգ-վեց առաջին դասարանցիներ:
Ուսուցիչը չկարողացավ շրջանցել փոքրիկներին ու ստիպված նրանց մեկ-մեկ վերցնելով՝ դրեց ճամփեզրի փափուկ ձյուների վրա ու ինքը առաջ անցավ: Երբ վերջինին էլ դըրեց կողքի ու անցնելով ետ դարձավ, նայեց՝ տեսավ, որ ձյան մեջ խրված երեխաները չէին կարողանում ելնել ու մտնել արահետը: Երեխաները ձյան մեջ խլվլում էին որպես... ձըրնծաղիկներ:
Ուսուցիչը ժպտաց ու հետո մեկ-մեկ նըրանց վերցնելով, դրեց արահետի վրա ու ինքը կրկին նրանց ետևից քայլեց առանց շտապելու:
Քայլե՜ց... քայլող ձնծաղիկների ետևից:



Նկարիչ՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆ



## ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

## Հարց ու պատասխան

Օրորվում են ծառերը
Գրկում աշնան պարտեզի,
Տերևներն են կաթկթում՝
Նման դեղին հարցերի:

Կանցնի աշունն, ու կիջնեն
Փաթիլները ծառերին՝
Որպես ձյունե պատասխան
Տերև-տերև հարցերին:

## Հիշողություն

Խրամատները հերկվել են վաղուց,
Խրամատները դարձել են հերկեր,
Դալար ծիլերն են հողից ծիծաղում,
Կարծես աշխարհում կռիվ չի եղել:

Ինչ հեշտ են հերկվել խրամատները…
Ժամանակի խոփն առել սրտերին՝
Չեն կարող այդպես հերկվել վշտերը…
Ու դեռ ցավում է սիրտը մայրերի:

ՍՏԵՓԱՆ ՄՈՎՍԻՍՅԱՆ, Վրաց. ՍՍՀ, Ախալքալաքի շրջան, գ. Տուրցխ

## Աշուն

Ծառերը՝ կանգնած մերկ ու տխուր՝
Փոխում են հագուստները շրշյունով,
Տերևներն են թափվում հազարավոր,
հազարագույն.
Անտես մի տխրություն կա հանդում
սփռված:
Թռչունները լուռ չվում են, չվո՛ւմ,
Քամին մեղմ երգում է երգեր հրաժեշտի,
Սարսռում, մրսում է ծիծաղը դաշտերի,—
Այս ի՛նչ քողեր են իջնում սարի ուսերին.
Աշո՛ւն է, աշո՛ւն…

## Մանուշակ

Անցա լեռով, անցա ձորով,
Անցա դաշտով ու անտառով,
Որոնեցի ու գտա քեզ,
Իմ մանուշակ, իմ բուրավետ:
Սիրտս լցվեց քո քնքշությամբ
Ու բուրմունքով քո նրբանուրբ…
Ձեռքս տարա, որ քեզ պոկեմ
Ու մայրիկիս նվեր տանեմ:
Բայց մայրիկիս ձայնն անուշիկ
Հովի թևով եկավ, փարվեց իմ
ականջին.
— Մանուշակը գեղեցիկ է
Սարի լանջին…

ՆԱԻՐԻՆԵ ՀԱԿՈԲՅԱՆ, Վրաց. ՍՍՀ, Դամալայի դպրոց, 7-րդ դաս

ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ




1987 թվականը հոբելյանական նշանավոր տարի է Սովետների երկրի համար: Լրանում է մեծ Հոկտեմբերի 70-ամյակը: Այդ մեծ տարեդարձի առթիվ «Սովետական գրող» հրատարակչությունը պատրաստում է տպագրության սովետական նշանավոր գրող Բորիս Պոլևոյի «Մեր Լենինը» գիրքը, որը պատմում է մեծ առաջնորդի բազմակողմանի գործունեության մասին:

Տպագրության է պատրաստվում նաև Պավել Բլյախինի «Կարմիր սատանայի ճտերը», վիպակը, որի պատանի հերոսները քաղաքացիական կռիվների ժամանակ շատ հերոսական գործեր են կատարել հանուն հեղափոխության:

Ծրագրվել և իրականացվում է «Քո ապագա մասնագիտությունը» մատենաշարը, որը ընթերցողին կողմնորոշի ու կօգնի ապագայում մասնագիտություն ընտրելու շատ կարևոր գործում: Այս տարի լույս կտեսնեն այդ մատենաշարի առաջնեկները՝ Սպարտակ Ղազարյանի «Ընտրության ստրատեգիան» գիրքը և Վարդգես Քալանթարյանի ու Մուշեղ Բաղդասարյանի «Կորած օրագիրը» վեպը: Այս տարի ընթերցողը կստանա Ալեքսանդր Մելքումյանի «Հայաստանի քարերը»՝ շքեղ ձևավորումով ու նկարազարդ: Կամսար Ավետիսյանի «Պատանի աշխարհագրագետ» գիրքը, որ ընթերցողին ճանապարհորդության է տանում, ծանոթացնում աշխարհի քաղաքների հետ, պատմում ոչ միայն բնության, այլև մարդու ձեռքերով ու մտքով կերտված հրաշալիքների, ինչպես նաև անցյալի խիզախ ճանապարհորդների ու նրանց հայտնագործությունների մասին: Ճիշտ, գեղեցիկ ու պատկերավոր լեզվով, կիրթ խոսելու արվեստին է նվիրված Լևոն Հախվերդյանի «Զրույցներ լեզվի մասին» գիրքը, որը շարունակաբար լույս է տեսել «Պիոներ» ամսագրում, մեկ անգամ էլ առանձին գրքով է հրատարակվել և այժմ վերահրատարակության է պատրաստվում: «Սպորտը խաղաղության դեսպանն է» մատենաշարով լույս կտեսնեն Հովհաննես Մարտիրոսյանի «Մեծ սպորտի ասպետները» և Լավրենտի Միրզոյանի «Սպորտ, սպորտ, սպորտ» գրքույկները:

«Դպրոցական գրադարան» մատենաշարը կհարստանա Ալեքսանդր Պուշկինի «Դուբրովսկի» վիպակով, «Հանուն բարեկամության» մատենաշարը՝ վրաց մանկագիրների պատմվածքներով, իսկ «Արկածային գրադարան» մատենաշարը՝ Ռուդյարդ Կիպլինգի «Լուսնաքարը» վեպով:

«Նշանավոր մարդկանց կյանքը» մատենաշարով լույս կտեսնի Գեորգի Կուբլիցկու «Ֆրիտյոֆ Նանսեն» գիրքը՝ նվիրված անվանի բևեռախույզին, մեծ գիտնականին ու նույնքան մեծ մարդուն, Առաքել Պատրիկի «Կոմիտաս» վիպակը՝ նվիրված մեծ երաժշտի կյանքի վերջին տարիներին, Արտաշես Մարտիրոսյանի «Մաշտոց» գիրքը՝ նվիրված հայ գրերի գյուտին ու դրա մեծ երախտավորի ծավալած լուսավորական գործունեությանը:

Կտպագրվի Աղասի Այվազյանի «18 օբյեկտիվ» խորագիրը կրող գիրքը, որ պատմում է, թե ինչպես է նկարահանվում կինոնկարը, ինչպես են այդ գործում զուգակցվում արվեստի մի քանի տեսակներ, ինչպիսի հետաքրքիր դեպքերի է ականատես եղել հեղինակը նկարահանումների ընթացքում:

«Աշխարհի ժողովուրդների հեքիաթները» մատենաշարով այս տարի կտպագրվեն ռուսական, մոլդավական և հնդկական հեքիաթները, ինչպես նաև Վերածննդի դարաշրջանի հսկաներից մեկի՝ Լեոնարդո դա Վինչիի հեքիաթները, զրույցներն ու առակները:

ԳԵՎՈՐԳ ԴԵՎՐԻԿՅԱՆ,
«Սովետական գրող» հրատարակչության մանկապատանեկան գրականության խմբագրության վարիչ

**ԿԱՐԵՆ ՍԻՄՈՆՅԱՆ**

# ԴԵՌ ԱՆԲԱՐԲԱՌ ՄԻ ՄԱՆՈՒԿ...



## Ըմբոստության առաջին դասերը

Դոնի Նախիջևանում սկսեցին լուրեր պըտըտվել, թե երաշտ է սպասվում։ Հետևաբար, հացի թանկություն էր լինելու։ Գաբրիել Պատկանյանը կռահեց, որ նախիջևանցի մեծահարուստների մի խումբ՝ Հարություն Խալիբյանի գլխավորությամբ, պարզապես՝ ուզում է արհեստականորեն բարձրացնել հացի գինը։ Ուսուցիչը շտապեց ցորեն գնել, որպեսզի գները բարձրացնելու փորձի դեպքում ցածր գնով անմիջապես շուկա հաներ և խափաներ Խալիբյանի ծրագիրը։ Եվ աշխույժ ու եռանդուն, հասարակության ցավերով ու հոգսերով ապրող այդ զարմանալի մարդուն հաջողվեց կանխել թանկություն ստեղծելու փորձը։ Բայց, ինչպես և պետք էր սպասել, փոխարենը ձեռք բերեց թշնամիների մի նոր ու զորավոր խումբ։ Թեև հասարակական գումարների շուրջ նրա բարձրացրած աղմուկն էլ իր հերթին անհետևանք չանցավ Մըկըր աղա Պոպովի համար։

Նախիջևանցի այս մեծահարուստը ոչ միայն հրաժարվել էր հաշվետվություն ներկայացնել հասարակական գումարի մասին, այլև արդեն վստահ էր ու համոզված, որ իրեն անհանգստացնող չի լինի։ Բայց դեպքերը զարգացան բոլորովին անսպասելի ուղղությամբ։

Առիթից որոշեց օգտվել Հարություն Խալիբյանը, որն իր խմբով արդեն բավականին հզորացել և պատրաստվում էր Հայկական շրջանի ամբողջ իշխանությունը հավաքել բռան մեջ։ Մըկըր աղա Պոպովը չդիմացավ Հարություն Խալիբյանի մրցակցությանը։ Նա ստիպված իր խոշոր կալվածքը շատ էժան վաճառեց Խալիբյանին, որպեսզի գումարը մուծի հասարակական գանձանակ՝ յուրացրած փողերի փոխարեն։ Իսկ հասարակության գանձանակն էլ ի պահ տրվեց... Հարություն Խալիբյանին։

Ուրեմն, դպրոցի շենք կառուցելու հարցը նորից մնում էր օդից կախված։ Համենայն դեպս Գաբրիել Պատկանյանը վստահ էր, որ

եկեղեցական գումարներին տիրացած Խալիբյանը մի գրոշ անգամ չի տալու «ազգի լուսավորության» և նման բաների համար: Նա նույնիսկ չէր էլ ուզում լսել Տեր Գաբրիելի անունը, որովհետև հացի թանկության առաջն առնելու նրա շրջահայաց գործողությունների հետևանքները դեռևս չէին կարողացել մարսել քաղաքի մեծահարուստները: Ուստի, հիմա էլ Խալիբյանն էր ձեռքերը տարածելով շարունակ կրկնում. «Ձալքը գլուխից որ անցնեն՝ հայերեն խոսողն ո՞վ է»:

Գաբրիել Պատկանյանի դպրոցը նորից կանգնեց փակվելու վտանգի առաջ:

Բայց չէ՞ որ նա՝ Տեր Գաբրիելը, գտել էր միակ ու ճշմարիտ ուղին: Չէ՞ որ նա իր դպրոցում վճռում էր այն խնդիրը, որը պատմության հեռավոր ժամանակներից ի վեր ծառացել էր հայերի առաջ: Ծարունակ ընկնելով այս կամ այն հզոր տերության տիրապետության ներքո, հայերը, ստիպված էին եղել ամեն անգամ կանգնել ազգային ինքնությունը և առաջին հերթին մայրենին կորցնելու վտանգի առաջ. հայոց լեզո՞ւն, թե՞ ասորերենը. հայոց լեզո՞ւն, թե՞ հունարենը և այլն: Հիմա փոխվել էին ժամանակները, և հարկավոր էր ավելի ճկուն գործելակերպ: Եվ Գաբրիել Պատկանյանը իր դպրոցում կատարել էր ամենակարևոր հայտնագործությունը, որը մեծ նշանակություն ուներ ազգը պահելու և ազգային առաջադիմության համար: Ինչպես ամեն մի մեծ հայտնագործություն՝ այն պարզ էր ու հասարակ:

Ինչո՞ւ արհամարհել մայրենին: Ինչո՞ւ հրաժարվել ինքնությունից: Ինչո՞ւ նահանջել բարոյականության քնագծից: Ինչո՞ւ մայրենիի չափ չտիրապետել ռուսերենին և, վերջապես, ինչո՞ւ չսովորել որևէ երրորդ ու չորրորդ լեզու ևս...

Եվ Գաբրիել Պատկանյանը իր աշակերտներին սովորեցնում էր դասական ու նոր հայերենները՝ ամբողջ կատարելությամբ, և նույնպիսի հոգատարությամբ նրանց ուսուցանում էր ռուսաց լեզուն՝ որպես տերության լեզու, ազգի հոգևոր առաջադիմության կարևոր մի ազդակ: Նա միաժամանակ իր սաների մեջ սերմանում էր ազգային արժանապատվության զգացումը, առանց որի անհնար է լինել հասարակությանը, ազգին ու մարդկությանը օգտակար, լիարժեք անհատականություն:

Պատկանյանի դպրոցում միայն լեզուներ ու գիտելիքներ չէր, որ յուրացնում էր Միքայելը: Առայժմ տասնամյա աշխույժ, խելացի, սուր միտք և կազմակերպելու, ընկերներին շուրջը համախմբելու, նրանց իր ետևից տանելու բացառիկ շնորհք ունեցող մանչուկը ուսուցչի վստահելի օգնականն էր այն պայքարի մեջ, որ վերջինս քանի-քանի տարի մղում էր սկզբում՝ Մըկըր աղա Պողովի, իսկ հիմա՝ Հարություն Խալիբյանի ու նրա հզոր խմբի դեմ:

Կառավարությունը սահմանել էր հարկեր ստանալու նոր կարգ, և հայերը, որոնք մինչ այդ օգտվում էին կարևոր արտոնություններից, ստիպված ենթարկվելու էին նոր օրենքին: Սկզբում բողոքներ էին ուղարկել մայրաքաղաք, որոնք, իհարկե, մնացել էին անպատասխան: Իսկ քաղաքի մեծահարուստները, որոնց ձեռքին էր գտնվում հայ համայնքի իշխանությունը, նպատակահարմար էին գտել հարկը հավաքել ու պահել գանձանակում այնքան ժամանակ, մինչև մայրաքաղաքից պատասխան գար:

Տարիները անցնում էին, բայց պատասխան չկար ու չկար:

Եվ երբ լուր եկավ, թե կոմս Միխայիլ Վորոնցովը դուրս է եկել շրջագայելու իր իշխանության ներքո գտնվող Ռուսիո երկրի քաղաքները, նախիջևանցի մեծամեծները որոշեցին օգտագործել հարմար առիթը և հանդիպելով կոմսին՝ առաջարկել, որ նա, գըլխահարկը քաղաքային գանձարանից ընդունելով՝ տեղափոխի արքունական գանձարան:

Գաբրիել Պատկանյանն էլ իր հերթին որոշեց գործողություններ սկսել: Եվ նրան հավատարիմ օգնականներ դարձան ուսուցչի ոգևորությամբ վարակված աշակերտները: Գաբրիել ուսուցիչը արդեն մեծ հեղինակություն ուներ Դոնի Նախիջևանում և բոլորովին դժվարություն չունեցավ համաքաղաքացիների օգնությամբ այնպես անել, որ քաղաքագլխի տուն գնալու ճանապարհին կոմսն ուզած-չուզած անցնի եկեղեցու մոտով:

Ուսուցչի այս նախապատրաստությունների լուրը հասավ Հարություն Խալիբյանին: Նա քաղաքապետարանի ոստիկաններին, որոնք մի քանի հոգի էին և կոչվում էին հնգապետներ, ուղարկեց ժողովրդին ցրելու և փողոցները մաքրելու: Հնգապետները գնացին և իրենք ևս միացան ժողովրդին՝ արգելք լինելու փոխարեն իրենք ևս սկսեցին եռանդով օգնել Գաբրիել Պատկանյանին:

Իրադրությունն ավելի սրվեց: Մթնոլորտն այնպես էր լարված, որ ամեն րոպե կարող էր լիցքաթափվել շանթ ու որոտով, ավերումով ու ողբերգությամբ... Հենց այս գերագույն

լարվածության պահերին էլ քաղաքը ողողվեց զանգերի խաղաղեցնող ղողանջներով: Գաբրիել Պատկանյանի համախոհները, վաղօրոք պայմանավորված լինելով, զանգահարությամբ լուր էին տալիս, թե կոմս Վորոնցովն արդեն դուրս է եկել Սուրբ Դմիտրի Ռոստովսկու դարպասից և շուտով կմտնի Նախիջևան:

Քիչ հետո Սուրբ Լուսավորիչ եկեղեցու հըրապարակն արդեն լեփ-լեցուն էր նախիջևանցիներով: Երբ քաղաքի գլխավոր փողոցի հեռավոր ծայրում երևաց կոմսի շքախումբը, Գաբրիել Պատկանյանը՝ հոգևորական դասի գլուխն անցած, շուրջառն ու խաչը ձեռքին, ելավ ընդառաջ:

Տեսնելով զգեստավորված հոգևորականներին և նրանց առջևից ընթացող քահանային, կոմսը, ինչպես որ կարգն էր, իջավ կառքից, խաչը համբուրեց ու եկեղեցի մտավ:

Առանց ժամանակ կորցնելու, Գաբրիել Պատկանյանը գլխահարկը վերացնելու մասին վաղօրոք նախապատրաստված խնդրագիրը բարձրաձայն կարդաց, հետո հանձնեց կոմսին ու ծնկի եկավ նրա առաջ, Գաբրիելի օրինակին հետևեց եկեղեցում հավաքված ժողովուրդը:

«Կոմս Միխայիլ Վորոնցովը,— գրում է Ականատեսը,— կռացավ, երկու ձեռքով բըռնեց Գաբրիել քահանայի ուսերից, ոտքի հանեց և ապա խոստացավ մեկնել ուղիղ Պետերբուրգ ու չվերադառնալ այնտեղից, մինչև վերացնել չտա գլխահարկը ու չվերականգնի հայերին տրված արտոնությունները»:

... Այսպես անցնում էին Միքայելի մանկության տարիները՝ տղային ներքաշելով զանազան մեծ ու փոքր իրադարձությունների հորձանուտը:

Եվ անցնող ամեն մի տարին ոչ թե անհոգ մանկություն էր, այլ փորձություններով հագեցած կյանք ու հասունացում:

Իսկ վարպետ Ղազարը արդեն համոզվել էր, որ շիտակ, ազնիվ, կարեկից ու գթասիրտ Միքայելից երբեք վաճառականի գործակատար դուրս չի գա: Տասնհինգամյա պատանին, ուսումը շարունակելուն զուգընթաց, տիրացու էր Սուրբ Լուսավորիչ եկեղեցում և պատրաստվում էր դառնալ հոգևորական:

1845 թվականի նոյեմբերի սկզբներին նորընտիր կաթողիկոսը՝ Ներսես Աշտարակեցին, ժամանեց Դոնի Նախիջևան:

Ինչպես ընդունված էր այն հեռավոր ժամանակներում, կաթողիկոսը ծանոթանում էր համայնքի անցուդարձին, հարցեր լուծում, կարգադրություններ անում: Այդ հարցերից մեկն էլ Գաբրիել Պատկանյանի գոյությունն էր Նախիջևանում: Քաղաքի «հայրերի» բողոքներին ընդառաջ գնալով, Ներսես Աշտարակեցին վճռեց փակել նրա դպրոցը ու հըրամայեց, որ ուսուցիչը իր ընտանիքով տեղափոխվի Թիֆլիս:

Բայց ո՞վ էր փոխարինելու բազմահմուտ և գիտուն ուսուցչին: Չէ՞ որ նույն այդ օրերին, երբ դատապարտված Գաբրիել Պատկանյանը պատրաստվում էր բռնել աքսորի ճամփան, կաթողիկոսը կատարեց հուսահատեցնող մի «հայտնագործություն». պարզվում էր, որ բոլոր մյուս քահանաները ու սարկավագները կատարելապես անգրագետ էին, չգիտեին քերականության ամենատարրական օրենքներն անգամ: Թվում էր, թե Գաբրիել Պատկանյանին ներում կշնորհվեր և կթույլատրվեր բացել իր դպրոցը, նույնիսկ ավելին՝ վերջապես կսկսվեր նաև դպրոցական շինարարության կառուցումը: Բայց ոչ. Ներսես Աշտարակեցին քաղաքի հոգևորականների վրա ուսուցիչ կարգեց այդ տարիներին Ղրիմից Դոնի Նախիջևան եկած Մկրտիչ Եկենյանին, որն ուսանել էր Վենետիկի Մխիթարյանների դպրոցում, հրաշալի քերականություն գիտեր ու մասնավոր դպրոց էր բացել:

Մխիթարյանները կաթոլիկ միաբաններ էին, որոնք իրենց գիտական ուսումնասիրությունների ասպարեզ էին ընտրել հայագիտությունը: Ինչպես այն ժամանակ, այնպես էլ հետագայում նրանք բազմաթիվ արժեքավոր աշխատություններ են հրատարակել՝ լուսաբանելով հայոց պատմության, լեզվի, գըրականության հարցեր: Բայց նրանց մեջ շատերը կային, որոնք ջանում էին կաթոլիկություն տարածել հայերի շրջանում: Կարելի է կարծել, թե՝ ինչ կա որ, կաթոլիկ կամ առաքելական՝ միևնույնը չէ՞, արդյոք: Բանն այն է, որ՝ ոչ, միևնույնը չէ: Այդ կնշանակեր հայ եկեղեցին զրկել ինքնուրույնությունից, ենթակա դարձնել Հռոմի պապին, որ կնշանակեր ինքնությունից զրկել նաև հայությանն ընդհանրապես:

... Այս իրադարձություններից մեկ ամիս էլ չանցած, Գաբրիել Պատկանյանը ընտանիքն առած դուրս եկավ Դոնի Նախիջևանից ու բռնեց աքսորի ճամփան՝ դեպի Թիֆլիս:

Նրան ուղեկցում էին ընդամենը երեք հոգի, որոնցից երկուսը շատ մոտիկ ազգականներն էին, իսկ երրորդը Միքայելն էր:

(շարունակելի)

ԳԱՌՆԻԿ ՄԿՐՏՉՅԱՆ

## Առաջին ձյունը

Ձյունը, մեղմիկ ու վախվորած,
Ձյունն առաջին ինչ-որ կարոտ արթնացրեց
— Ո՞ւմ ողջույնն է նման երգի,
Ո՞վ առաջին ողջույնը իր
Կամեցավ հենց ինձ պարգևել:

Ձյունն առաջին՝ իմ մեջ հնչող, ասես լին
Ծերմակաթև արձագանքը զանգակների:
—Լսո՞ւմ ես դու, թե՞ չես լսում
Ձյուների հետ հանդարտ փռվող
Ղողանջները արծաթագույն:

Չեմ հիշում, թե եղած լինի այսպիսի ձյուն
Այսքան զվարթ, այսքան քնքուշ մի
արթնացում
— Եվ չե՞ս տեսնում դու էլ անգամ
Իմ մեջ ծնված, իմ շուրջ իջնող
Հրաշքը այս՝ պա՜րզ, իրակա՜ն:

## Առավոտը

Լույսերի ի՜նչ շատրվաններ,
Ալիքումներ ի՜նչ հույզերի,
Առավոտ չէ սովորական,
Դուք ցանկացեք ինձ միանալ,—
Միայն այդքան:

Օրն է շողում խենթ հրճվանքից,
Հրաշքներ են իմ շուրջ ծաղկում:
Առավոտ չէ սա հասարակ,—
Պատուհանները ձեր բացեք,—
Միայն այդքան:

Օրն է ցնծուն, լույսն է խայտում,
Ձեզ բոլորիդ՝ ծաղիկ ու երգ:
Առավոտ չէ սովորական,
Տոն է, դուք ինձ արձագանքեք,—
Միայն այդքան:

## Երգը

... Քնեցի, կոպերիս տակ՝ լույսն
աստղիկների,
Պահած ցոլանքը հեռավոր լուսնի,
Պահած ձայները բարդու և քամու,
Տաք խոստումները իրիկնամուտի...
Արթնացա և՝ ի՜նչ.
Մի երգ խատուտիկ, մի երգ կարկաչուն,
Իմ սենյակո՞ւմ, թե՞ հենց իմ կրծքի տակ
Թևում էր, հնչում...



ՊԻՈՆ ՀԱԿՈԲՅԱՆ
Բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

# ԱԶԱՏԱԽՈՀ ՈԳԻ

Րաֆֆին մեր մեծ նախորդներից է, գեղարվեստական խոսքի անզուգական վարպետ, անմահ վեպերի ու ժողովրդական կերպարների ստեղծող, ազատագրական որոնումների երգիչ ու վերածնության պատգամախոս, ճնշված ու հարստահարված ժողովրդի արդար իրավունքների պաշտպան ու բողոքի ձայն, Աբովյանի և Նալբանդյանի գրական ավանդությունների շարունակող:

Համաշխարհային գրականության կախարդ վարպետների նման՝ նրա խոսքը մոգական զորություն ունի, հմայում ու խանդավառում է ընթերցողին, առաջնորդում վեհ նպատակների ու հերոսացման: Րաֆֆու ստեղծագործությունները այսօր էլ որոշակի մասնակցություն են բերում հայոց երիտասարդության բարոյական դիմագծի ազնվացմանը և մարդասիրական-հայրենասիրական զգացումների ձևավորմանը:

Նրա իսկական անուն-ազգանունը Հակոբ Մելիք-Հակոբյան է, իսկ Րաֆֆին (ինչպես նաև՝ Մելիքզադե, Փավստոս և այլն) ծածկանունն է, որ որդեգրել է իր առաջին վիպական ստեղծագործությունները հրատարակելու օրերից՝ 70-ական թթ. սկզբներից: Ոմանց ասելով՝ այդ անունը ծագում է պարսկերեն նույնանուն բառից և նշանակում է վեհ, բարձր, վսեմ, իսկ ըստ այլոց՝ փոխ է առնված եբրայերեն «րաբբի» բառից, որ նշանակում է ուսուցիչ, քարոզիչ, հոգևոր առաջնորդ: Ինչ կերպ էլ մեկնելու լինենք՝ նա հիրավի վեհ ու հզոր անհատականություն էր, ազատաբաղձ ու մոլեգին ոգի, իմաստուն ուսուցիչ և քարոզիչ: Պատահական չէ, որ Ռափայել Պատկանյանը՝ գնահատականներ տալիս շատ խիստ դատավոր, Րաֆֆուն անվանել է «մարգարե բանաստեղծ»:

Դարի հրամայական պահանջով ու ճիշտ ժամանակին աշխարհ եկավ Րաֆֆին, որպեսզի բորբոքեր ժողովրդի հոգում անթեղված ազատության կայծերը՝ ջարդելու համար ստրկության լուծը:

Նրա նախնիները Պարսկաստանի Ատրպատական աշխարհի Սալմաստ գա-

վառի Փայաջուկ գյուղում հաստատված Օրգունենց բազմանդամ տոհմից էին: Պապին կոչում էին Մելիք Հակոբ, հորը՝ Մելիք Միրզա, տատին՝ Սոնա խանում, մորը՝ Ջեյրան խանում: Րաֆֆու ծննդյան թվականը ճիշտ հայտնի չէ, ամենահավանականը 1835-ն է:

Կանոնավոր կրթություն պատանի Հակոբը չկարողացավ ստանալ: Սկզբում նա հաճախում էր ծննդավայրի ծխական դպրոցը, որտեղից շուտով փախավ, որովհետև ծեծից ավելի բան չտեսավ. դպրոցի և ուսուցչի պատկերը նա հետագայում գծեց «Կայծեր» վեպում, ի դեմս Տեր Թոդիկի: Հետո հայրը՝ վաճառական Մելիք Միրզան, հետը տարավ Թիֆլիս և հանձնեց Բելախյան ազգանունով մի ուսուցչի, ապա՝ տեղի գիմնազիան, բայց ուսումը չավարտած՝ 1856-ին ետ կանչվեց Փայաջուկ՝ հորն օգնելու: Հակոբին այլ բան չէր մնում, եթե ոչ չարաչար ինքնաշխատությամբ լրացնել ուսման թերին, կրթել իր գրական ճաշակը:

Բնությունից նա պարգև էր ստացել վառվռուն երևակայություն և տպավորվող հոգի, սուր միտք և ազդու խոսք, որոնք և դարձան նրա տաղանդի ծաղկման գլխավոր հատկանիշները:

Գրական առաջին քայլերն սկսելով ազգային ազատագրական պայքարի բորբոքուն օրերին և առևտրական գործառնությունների պատճառով մշտապես լինելով շրջագայությունների ու ժողովրդի մեջ, Րաֆֆին գրեթե ամենուր ականատես էր դառնում անարդարության, բռնության և ստրկության ծանր դրսևորումներին, ազգակիցների ողբերգական կացությանը և բարոյական այլասերմանը:

Իր գրական ու գաղափարական ուսուցիչների՝ Աբովյանի և «Հյուսիսափայլի» հրատարակիչների նման, նա ևս հույսը կապում էր կրթության ու լուսավորության ամենազոր ուժի հետ, այդ խնդրի շուրջ երկար խոսելով իր ձեռագիր վեպերում:

Հայրը շուտով մեռնում է, ունեցվածքը՝ ցնդում, և բազմանդամ ընտանիքի հոգսը ծանրանում է Հակոբի ուսերին, որը չարաչար աշխատելով (ուսուցիչ, գործակատար և այլն)՝ մի կերպ ապահովում է նրանց ապրուստն ու շարունակում ինքնակրթությունն ու գրական պարապմունքները:

Կյանքում ու գրական առօրյայում շատ էին տարբեր միմյանցից Րաֆֆի գրողն ու Րաֆֆի մարդը: Նրանք, ում բախտ է վիճակվել շփվելու նրա հետ, հետագայում պատմում էին, որ Րաֆֆին զարմանալի հեզ ու համեստ մարդ էր, սակավախոս, ինքնամփոփ, գովասանքներ լըսելիս՝ շփոթվում էր մանկան պես, մտորումները ծածկում ուրիշներից, սակավ էր պատահում, որ վրդովվեր: Արտաքինից դատելով՝ փոքրահասակ էր, գլուխը՝ խոշոր, ճակատը՝ լայն ու բարձր, դեմքը՝ թուխ ու մուգ, մորուքը՝ թանձր ու ալեխառն և կարճ խուզած, աչքերը՝ հիվանդոտ: Կրում էր սև ակնոց, ծածկում կիսապարսկական սև մորթե գլխարկ: Ճաշում էր օրը մեկ անգամ, կեսօրին, ինչ-որ էժանագին ճաշարանում: Թուլությունները մեկ-երկուսն էին՝ մուգ թեյը, որ խմում էր ամբողջ գիշեր, անընդհատ ծխում ու պարապում մինչև լույս: Այդպես միտքն ավելի պայծառ էր գործում ... Շատ էր սիրում ծաղիկներ: Բընակարանի պատշգամբը, ինչպես վկայում է Շիրվանզադեն, կատարյալ բուրաստանի տպավորություն էր թողնում: Ինքն էր խնամում ու ջրում: Երեկոյան դեմ սովորություն ուներ գբոսանքի դուրս գալ՝ գավազանը միշտ առջևը բռնած: Շատերը կարծում էին, թե նա պարսիկ դեղավաճառ է:

Առասպելական էր նրա աշխատասիրությունը. օրական պարապում ու ըստեղծագործում էր տասնվեց ժամից ավելի. «Լավ է աշխատել առանց վաստա-

Րաֆֆու անձնական իրերից



կի, քան թե անգործ մնալ. անգործությունն մեռելներին է պատկանում»,— ասում էր նա: Սկսելով մի վեպ, դեռ չավարտած՝ հանձնում էր տպագրության, իսկ հետո՝ էջ առ էջ լրացնում և թանաքը չչորացած՝ հասցնում գրաշարին, ծավալվելով ու շարունակ հյուսելով նոր, անսովոր ու գայթակղիչ միջադեպեր: Բանավեճը նրա տարերքն էր՝ ճշմարտությունը հայտնագործելու, իր գաղափարները արծարծելու, արդիականության կենսական հարցերի վերաբերմամբ իր դիրքորոշումը երևան հանելու օրհնյալ ուղին: Միշտ էլ, կարծես, թեժ կռվի մեջ էր, բայց գրչով զինված՝ մոլեգին, անզուսպ, իսկ խոսքը՝ կուռ ու տրամաբանված...

Րաֆֆին ամենաժողովրդական հայ գրողն էր՝ նրա վեպերը նվաճել էին ազգի սիրտը, և բազմահազար ընթերցողներ ուներ՝ «Խենթը», «Ջալալեդդինը», «Կայծերը», «Դավիթ Բեկը», «Սամվելը», «Ոսկի աքաղաղը» ձեռքից ձեռք էին անցնում, ընթերցվում ժողովրդական հավաքույթների ժամանակ, վերապատմվում որպես նորօրյա վիպասքներ: Հետին անգրագետ գեղջուկն անգամ փնտրում էր նրա գրքերը:

Րաֆֆու ստեղծագործությունները ընթերցողների առջև բաց էին անում հայ ժողովրդի պատմության, ներքին կյանքի ու ազգային հոգեբանության էական կողմերը, վերլուծում ողբերգական առօրյայի պատճառները, վերածնության ու մաքրագործման միջոցներ առաջադրում, նախապատրաստում ազգությանը հայրենափրկիչ ու աշխարհաշեն գործերի:

Րաֆֆին լավ գիտեր ոչ միայն պարսկահայոց, արևելյան ու արևմտյան հայության կյանքն ու կարիքները, այլև անցյալ ու ներկա պատմությունը, գեղարվեստի հուշարձանները, ավերակ քաղաքները, բերդերը, տաճարները, ընդհանրապես հայ հայրենիքն ու հային, որը թեպետև անաղարտ կյանքի մեջ, քաղաքականապես կոտորակված, ձուլման ու ոչնչացման վտանգի առջև, սակայն վերջնականապես չէր կորցրել ազատաբաղձության, անձնազոհության ոգին: Տեսական շփումները ու զննումները նրան համոզել էին, որ հայ ժողովուրդն այլևս «երկար չի կարող համբերել իրեն ճնշող ու ստրկացնող կոպիտ ձեռքին: Նա վերջապես պիտի խլրտա, պիտի խորտակի իր շղթաները և պիտի թոթափի բռնակալի լուծը», ապստամբության դրոշ պարզելով ընդդեմ բռնության, անարդարության ու ստրկության: Պատմության դասերը և ժողովրդական վրիժառուների նորօրյա սխրանքները նույնպես ցույց էին տալիս, որ հայերի սրտում դեռ չի հանգել հայրենասիրության կայծը. «բավական էր փչել նրա վրա, և իսկույն կըբորբոքվեր...»:

Րաֆֆին գտնում էր, որ կայծերը բորբոքելու հուսալի միջոցը գրականությունն է: Նա հավատում էր արվեստի հրաշագործ ուժին: «Մի լավ գիրք կարող է փըրկել մի ամբողջ ազգ»,— ասում էր նա, իրար ետևից լույս աշխարհ հանելով իր հրաշագործ գրքերն ու բորբոքելով հայրենասիրության կայծերը, որոնցով Հայաստան աշխարհում խարույկներ վառեցին Վարդանը, Սարհատը, Կարոն, Ասլանը: Երբ ներկան Րաֆֆուն չէր տալիս այդ գաղափարները անձնավորող կերպարներ, նա օգնության էր կանչում պատմությանն ու պատմական դեմքերին՝ Սամվելին, Մուշեղին, Արտավազդին, Մաշտոցին, Դավիթ Բեկին, Մխիթար սպարապետին, Մովսես Խորենացուն:

Այս ամենի խոսուն ապացույցը Րաֆֆու ծրագրային-քաղաքական վեպերն են, նրա պատմական ասքերը:

Րաֆֆու ստեղծած կերպարները խոր հետք էին թողնում ընթերցող սերունդների մտածողության վրա: Օրինակ, իրազեկները պատմում են, որ շուշեցի գիշերապահը լուսնի աղոտ լույսի տակ կարդում է Րաֆֆու «Խենթը» և հետևյալ օրը, վաղ առավոտյան հեռանում Արևմտյան Հայաստան՝ համալրելու ժողովրդական վրիժառուների շարքերը: Ծընողներն այնուհետև սովորություն են դարձնում իրենց նորածիններին կոչելու Րաֆֆու իդեալական հերոսների՝ Վարդանի, Մուշեղի, Սամվելի, Արտավազդի, Աշխենի, Թամարի անուններով... Նրանցից մեկն էլ Հովհաննես Թումանյանն էր, հայ ազգային մեծ բանաստեղծը, որի առաջին երեխաները մկրտված են «Սամվել» վեպի հերոսների անուններով՝ Մուշեղ, Արտավազդ, Աշխեն...

Այսօր էլ չեն խամրել Րաֆֆու գրական կտավների պայծառ գույները, նա կրկին ամենաժողովրդական ու սիրված հայ գրողն է, որ բորբոքում ու ընթերցողի սրտում բոցավառում է հայրենասիրության կրակը, նրան ոգեկոչում արդար ու ազնիվ գործերի:

ՀԱՅԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ

# ՏԵՂԱՆՈՒՆԸ ՀՈՒՇԱՐՁԱՆ Է



## ԱՂՁՔ

Զորափ գյուղը գտնվում է Աշտարակի շրջանում, Ամբերդ ձորի աջ լանջին: Զորափը նորաթուխ անուն է: Տասնհինգ դար շարունակ գյուղը կոչվել է Աղց կամ Աղձք: Ստույգը Աղցն է:

Այս հին գյուղը պահել է մեր պատմության մի ծալքը: Գյուղում հնամենի զարդաքանդակներով մի դամբարան կա, որի մեջ ամփոփված են հեթանոս ու քրիստոնյա հայ Արշակունի թագավորների աճյունները:

Բայց ինչպե՞ս եղավ, որ այս գյուղը դարձավ թագավորական դամբարանատուն:

Չորրորդ դարի կեսերին պարսից Շապուհ Երկրորդ արքան ասպատակում է Հայոց աշխարհը, հասնում Անի—Կամախ, բացել տալիս այնտեղ թաղված հայ թագավորների գերեզմանները և նրանց աճյունները լցնում կառքերի մեջ ու մտադրվում փոխադրել Պարսկաստան:

Պարսիկների արածը զարմացնում է մարդկանց: Նրանց ինչի՞ն են պետք հայոց մեռած տիրակալների ոսկորները:

Հարցին պատասխանում է այս զրույցը մեզ ավանդող պատմիչ Փավստոս Բուզանդը: Նա գրում է. «Որովհետև նրանք, ըստ իրենց հեթանոսական կրոնի, ասում էին. «Նրա համար ենք մենք Հայոց թագավորների ոսկորները մեր աշխարհը տանում, որ այս աշխարհի թագավորների փառքը, բախտն ու քաջությունը այստեղից թագավորների ոսկորների հետ մեր աշխարհը փոխադրվեն»:

Եվ ահա, լուրը Հայոց աշխարհի մի ծայրից թևածում է մյուս ծայրը.

— Պարսիկները գերի են տանում հայոց թագավորների ոսկորները:

Հենց այդ ժամանակ քաջակորով սպարապետ Վասակ Մամիկոնյանը հայոց այրուձիով հասնում է թշնամուն և Արարատյան դաշտում մարտի բռնվում նրա հետ: Վասակ Մամիկոնյանը հաղթում է պարսիկներին, նրանցից խլում հայոց թագավորների աճյունները և դրանք բերում, թաղում Աղց գյուղում:

Գրաբարում աղց նշանակում է՝ պետք, կարիք, անհրաժեշտություն, ներքին պահանջ: Այդ անունը հավանաբար տվել է Վասակ Մամիկոնյանը, որի իմաստն այն է, թե ժամանակն է ստիպել իրեն, որ հայոց թագավորների ոսկորները թաղեն այդտեղ, թե դա անխուսափելի անհրաժեշտություն էր:

## ԱՂՈՒԴԻ

Աղուդի գյուղը Սիսիանի շրջանում է, Որոտանի ձախ ափին: Հայոց տարեց գյուղերից է: Հնում այս գյուղում էր գտնվում Սյունաց աշխարհի ամենամեծ աղատունը, որտեղից աղ էին տանում Ծղուկ, Բաղք, Հաբանդ, Աղահեճք, Ձորք, Կովսական գավառների գյուղերի բնակիչները: Այդ պատճառով գյուղը կոչվել է Աղատուն, որ հետո հնչյունափոխվել է ու դարձել Աղուդի:

ՄԽԻԹԱՐ ՈՍԿԱՆՅԱՆ

# ԳՈՐԻՍ

## ԱԿՍԵԼ ԲԱԿՈՒՆՑԻ ՏՈՒՆ-ԹԱՆԳԱՐԱՆՈՒՄ

Գորիսի Լենինի փողոցի վրա գտնվող կամարակապ դարպասներից մեկին փակցրած ցուցանակն ազդարարում է. «Ակսել Բակունցի տուն-թանգարան»: Մտնում ենք: Բակի ձախ կողմում այգու դռնակն է: Այգում հնկայական ծառեր են ու վարդի մանրիկ թփեր: Տանձի ու խնձորի ծառերի մի մասը Բակունցն իր ձեռքով է տնկել: Այն ժամանակ կարծում էին, թե Գորիսում այդ ծառերը պը-



Բակունցի տուն-թանգարանը

Բակունցի աշխատասենյակը

Լուսանկարները՝ ԳԱԳԻԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ



տուղ չեն տա: Տունը երկու հարկաբաժին ունի. մեկում այժմյան թանգարանն է, մյուսում՝ ապրողներ կան, բայց շուտով ետ է գնվելու ու միանալու թանգարանին:

Երբ Բակունցը ծնվել է, հոր ալեքսանդրապոլցի ընկերները (այժմյան Լենինական), նվերներ են ուղարկել, հետն էլ խնդրելով, որ որդու անունը Ալեքսանդր դնի (իրենց քաղաքի պատվին): Հայրը՝ Ստեփան Բակունցը, այդպես էլ վարվել է:

Ցուցադրված անձնական իրերը քիչ են՝ ժամացույց, գրիչ, շախմատ, ֆոտոապարատ, անձնական գրադարանից մի քանի գրքեր, ճեմարանական տարիների ափսե, որ մայրը մասունքի նման է պահել: Ահա և գրողի մոր՝ Բողչյագյուլ Խուրշուդյանի զանգեզուրյան տարազով լուսանկարը, Բողչյագյուլ մայրիկը դիմանկար էլ ունի, հեղինակը Մարտիրոս Սարյանն է: Բակունցի մայրը շատ ամոթխած է եղել, որդու խնդրանքին տեղի տալով է

նկարվել ու հետո հարևաններին պատմել, թե իրեն խայտառակ են արել: Մի տպագրանքա-րի լուսանկար կա՝ Արթին պապին է: Դուք անշուշտ հիշում եք նրան «Նամակ ռուսաց թագավորին» պատմվածքից: Փոքրիկ Ալեքսանդրը նրա մոտ է դաստիարակվել, լսել նրա հետաքրքիր պատմությունները, նրանից սովորել լինել բարի, մարդասեր, ընկերասեր...

Լուսանկարներից մի քանիսը պատմում են Ալեքսանդրի դպրոցական տարիների մասին: Ցուցադրված է «Վարդանն Ավարայրում» անհայտ նկարչի գործը, որը գրողը նվեր էր ստացել ծխական դպրոցը գերազանց գնահատականներով ավարտելու համար:

Այդ տարիներին Գորիսի մտավորական, գրքասեր հասարակայնության հավաքատեղին «Սասուն» գրախանութն է եղել: Պահպանված է այս գրախանութում գրված 152 ստորագրություն ունեցող մի դիմում, որի հեղինակները կաթողիկոսին խնդրում են Ալեքսանդր Բակունցին ընդունել Էջմիածնի Գևորգյան ճեմարանը:

Ցուցափեղկի տակ նորվեգ դրամատուրգ Բյերնստերն Բյերնսոնի «Նորապսակները» պիեսն է: Այս պիեսում Բակունցը խաղացել է Ակսելի դերը և ընկերները Ալեքսանդրի փոխարեն սկսել են նրան Ակսել կոչել այնքան, մինչև հին անունը մոռացության է մատնվել, ու գրողն ինքն էլ է ընդունել նոր անունը:

Թանգարանի անկյուններից մեկում ռուս-թուրքական պատերազմը պատկերող նկարներ են: Շատերի նման Բակունցն էլ էր Հայաստանն ազատագրելու երազանքով 1917 թվականին մեկնել ռազմաճակատ ու... հիասթափված վերադարձել:

Ցուցափեղկում խունացած թերթի մի պատառիկ է՝ Բակունցի գրած ֆելիետոնն է Գորիսի քաղաքագլխի մասին, ստորագրված՝ Թեզ Գնացող: Քաղաքագլուխը կատաղած որոնել է հեղինակին: Բակունցը նույն «Փայլակ» շաբաթաթերթի հաջորդ համարներից մեկում խոստովանել է, որ ինքն է հեղինակը և... քաղաքագլուխը նրան 34 օր բանտում պահելուց հետո, հոր խնդրագրերից և զանազան մարդկանց միջամտություններից հետո ազատել և ուղարկել է որպես ուսուցիչ աշխատելու հեռավոր Լոր գյուղը: Գյուղի ծերերի հիշողության մեջ նա մնացել է իբրև Էջմիածնից եկած ջահել, սուրբ ուսուցիչ:

1919 թվականին Բակունցը ուզում է սովորելու մեկնել Մոսկվա, սակայն ճանապարհածախսը չի բավականացնում և... ստիպված ընդունվում է Թիֆլիսի պոլիտեխնիկական ինստիտուտը: Մեկ անգամ ևս նա փորձում է Մոսկվա հասնել, սակայն այս անգամ էլ նյութական պայմանները ստիպում են կանգ առնել Խարկովում ու ընդունվել տեղի գյուղատնտեսական ինստիտուտը: 1923 թվակա-



ԳԱՐԻԿ ՇԱՀՈՒՆՑ, 6 տ.



ԳՈՌ ՀՈՎՍԵՓՅԱՆ, 9 տ.

նին վերադառնալով Գորիս, արդեն գյուղատնտես, ասում են, Բակունցը թռով վերցնում, համբուրում է հայրենի հողը: Ցուցափեղկում գյուղատնտեսական գրքեր են, որ գրողը գրել է գյուղացիների համար, նրանց հասկանալի լեզվով: Ահա և մեծ բանաստեղծ Եղիշե Չարենցի լուսանկարը: Չարենցը և Բակունցը մտերիմներ էին: Չարենցը պոռթկուն բնավորություն ուներ, Բակունցը ներհուն էր ու հանգիստ, և երբ Չարենցը հուզված էր լինում, ասում էր. «Գնանք Բակունցի մոտ, Կոմիտաս լսենք» (Բակունցը լավ երգել է իմացել): Բակունցի գրական հերոսների նախակերպարների լուսանկարներում հանդիպում ենք Եգոր Ադամովին՝ «Նամակ ռուսաց թագավորին» պատմվածքից (Եգորը Բակունցի քեռին էր), Բրուտ Գալուստին՝ «Բրուտի տղան» պատմվածքից (բրուտ Գալուստը Բակունցի հորեղբայրն էր), Եփրատ Երեմին՝ Կյորեսի հերոսներից և այլն: Ահա և գրողի ստեղծագործությունների թարգմանությունները ռուսերեն, լատվիերեն, ուկրաիներեն, անգլերեն, ֆրանսերեն, չեխերեն և այլ լեզուներով: Թանգարանի մեկ այլ սենյակում տան իրերն են՝ գորգը, լամպը, ինքնաեռը, թանաքամանները, սպասքապահարանը, սնդուկը (որի մեջ պահել են տան ամենասուրբ համարվող իրերը), զգեստապահարան, աթոռներ, սեղան (այս սեղանի վրա է գրողը աշխատել, գիշերները լամպի լույսի տակ, իսկ ցերեկները սեղանը հանել է դուրս, աշխատանքը շարունակել բաց երկնքի տակ): Ցուցանմուշներն ավարտվում են Համո Սահյանի, Վահագն Դավթյանի և Գուրգեն Մահարու Բակունցին նվիրված բանաստեղծությունների ձեռագիր օրինակների ցուցադրությամբ:

Ամեն տարի ամռանը, գրողների միության հետ համատեղ, Գորիսում կազմակերպվում է «Բակունցյան օրեր» տոնակատարությունը, որ սկսվում է Վարարակն գետի մոտ տեղադրված Ակսել Բակունցի արձանից և ավարտվում կուլտուրայի պալատի մոտ: Արձանից մինչև կուլտուրայի պալատ գորիսյան ոճով կառուցված սեփական տներ են: Բնակիչները հյուրերին դիմավորում են ամեն մեկն իր տան առաջ և, ինչքան Բակունցի ստեղծագործություններում նկարագրված գորիսյան իրեր կան՝ դուրս են հանում:

Մի տեղ ճախարակ են մանում, բուրդ են գզում, մի այլ տեղ լավաշ են թխում, գորգ են գործում, մի ուրիշի տան մոտ էլ պապենական թախտն է դրված, հավ են մորթում, հյուրասիրում թեյ, թութ, լավաշ... Տոնակատարությունը շարունակվում է երեք օր:






Այս տարի ես դարձա քառասուն տարեկան:

Ուրեմն, ստացվում է, որ ես քառասուն անգամ տեսել եմ Նոր տարվա տոնածառ: Դա շատ է:

Դե, կյանքիս առաջին երեք տարիների ընթացքում, երևի, ես չէի հասկանում, թե ինչ է տոնածառը: Երևի մայրս ձեռքերի վրա էր ինձ պահում, ու, երևի, ես իմ սևուկ աչիկներով առանց հետաքրքրության նայում էի զարդարված ծառին:

Իսկ երբ լրացավ իմ հինգ տարին, ես հիանալի հասկանում էի, թե ինչ է տոնածառը:

Եվ ես անհամբերությամբ սպասում էի այդ ուրախ տոնին ու անգամ դռան ճեղքից թաքուն նայում էի, թե ինչպես է մայրիկը զարդարում տոնածառը:

Իմ քույրիկ Լոլյան այդ ժամանակ յոթ տարեկան էր և արտակարգ ժիր աղջիկ:

Նա ինձ մի անգամ ասաց.

— Մինկա, մայրիկը գնացել է խոհանոց: Արի մտնենք տոնածառի սենյակը և տեսնենք, թե ինչ է այնտեղ կատարվում:

Ահա, քույրիկ Լոլյայի հետ մենք մտանք սենյակ: Եվ տեսանք շատ գեղեցիկ տոնածառ: Տոնածառի տակ դրված են նվերները, վրան՝ գույնզգույն ուլունքներ, դրոշակներ, ոսկյա ընկույզներ, պաստեղներ և ղրիմյան խնձորներ:

Իմ քույր Լոլյան ասում է.

— Նվերները չենք նայի: Դրա փոխարեն ավելի լավ է արի մեկական պաստեղ ուտենք:

Եվ, ահա, նա մոտենում է տոնածառին ու միանգամից ուտում թելից կախված պաստեղը:

Ես ասում եմ.



— Լոլլա, քանի որ դու կերար պաստեղը, ես էլ մի բան կուտեմ:

Եվ մոտենում եմ տոնածառին ու մի քիչ խնձոր եմ կծում:

Լոլլան ասում է.

— Մինկա, քանի որ դու խնձորը կծեցիր, ես էլ մի ուրիշ պաստեղ կուտեմ և, բացի դրանից, կվերցնեմ նաև այս կոնֆետը:

Իսկ Լոլլան բարձրահասակ, լոլոզ աղջիկ էր և կարողանում էր հասնել ամենաբարձրերին:

Նա կանգնեց ոտքերի թաթերի վրա և իր մեծ բերանով սկսեց ուտել երկրորդ պաստեղը:

Իսկ ես զարմանալի կարճ հասակ ունեի: Եվ բացի ցածրում կախված խնձորից, գրեթե ոչինչ չէի կարողանում ձեռք գցել:

Ես ասում եմ.

— Քանի որ դու, Լոլլաշա, կերար երկրորդ պաստեղը, ես մեկ անգամ էլ կկծեմ խնձորը:

Եվ ես նորից բռնում եմ խնձորն ու մի քիչ էլ եմ կծում:

Լոլլան ասում է.

— Քանի որ դու երկրորդ անգամ կծոտեցիր խնձորը, ապա ես այլևս ձևեր չեմ թափի ու հիմա կուտեմ երրորդ պաստեղը և, բացի դրանից, որպես հիշատակ կվերցնեմ շրխկանն ու ընկույզը:

Քիչ մնաց զռռոցս դնեի, որովհետև նա կարողանում էր ամեն ինչ ձեռք գցել, իսկ ես՝ ոչ:

Ես նրան ասում եմ.

— Իսկ ես, Լոլլաշա, տոնածառի մոտ աթոռ կդնեմ և բացի խնձորից էլի ինչ-որ բան ձեռք կգցեմ:

Եվ, ահա, ես իմ նիհարիկ ձեռքերով սկրսեցի տոնածառի մոտ քարշ տալ աթոռը:

Բայց պտոռը շուռ եկավ վրաս: Ես ցանկացա բարձրացնել, բայց պտոռը նորից շուռ եկավ: Եվ՝ ուղիղ նվերների վրա:

— Մինկա, դու վայ թե կոտրեցիր տիկնիկը: Այդպես էլ կա: Դու կոտրեցիր տիկնիկի ճենապակյա ձեռքը:

Այդ պահին լսվեցին մայրիկի ոտնաձայները, և մենք Լոլյայի հետ վազեցինք մյուս սենյակ:

Լոլյան ասում է.

— Իսկ հիմա, Մինկա, չեմ կարող ասել, թե մայրիկը քեզ մի լավ չի ծեծի:

Ես ուզում էի լաց լինել, այդ պահին եկան հյուրերը:

Շատ երեխաներ... իրենց ծնողների հետ:

Եվ այդ ժամանակ մեր մայրիկը վառեց տոնածառի բոլոր լույսերը, բացեց դուռը և ասաց.

— Բոլորդ ներս եկեք:

Եվ բոլոր երեխաները մտան տոնածառի սենյակը:

Մեր մայրիկն ասում է.

— Հիմա թող ամեն երեխա մոտենա ինձ ու ես ամեն մեկին խաղալիք կտամ ու կհյուրասիրեմ:

Երեխաները սկսեցին մոտենալ մեր մայրիկին: Եվ նա յուրաքանչյուրին խաղալիք տվեց: Հետո վերցնում էր տոնածառի ճյուղերից խնձոր, պաստեղ, կոնֆետ ու նորից տալիս երեխաներին:

Բոլոր երեխաները շատ ուրախ էին: Հետո, մայրիկը վերցրեց այն խնձորը, որ ես կծոտել էի ու ասաց.

— Լոլյա և Մինկա, եկեք այստեղ: Ձեր երկուսից ո՞վ է կծոտել այս խնձորը:

Լոլյան ասաց.

— Դա Մինկայի արածն է:

Ես քաշեցի Լոլյայի ծամերից ու ասացի.

— Դա ինձ Լոլյան է սովորեցրել:

Մայրիկը ասում է.

— Լոլյային ես անկյուն կկանգնեցնեմ՝ դեմքով դեպի պատը, իսկ քեզ ես ուզում էի նվիրել լարովի շոգեքարշ, բայց հիմա լարովի շոգեքարշը կնվիրեմ այն տղային, որին ուզում էի նվիրել այդ խնձորը:

Մայրիկը վերցրեց շոգեքարշն ու նվիրեց չորս տարեկան մի տղայի: Եվ տղան սկսեց անմիջապես խաղալ դրանով:

Ես բարկացա այդ տղայի վրա և խաղալիքով հարվածեցի նրա ձեռքին:

Նա այնպես ուժգին սկսեց գոռալ, որ մայրը նրան ձեռքերի վրա վերցրեց ու ասաց.

— Այսուհետև իմ տղայի հետ ես ձեզ հյուր չեմ գա:

Ես ասացի.

— Կարող եք գնալ, այդ դեպքում շոգեքարշը ինձ կմնա:

Նրա մայրիկը զարմացավ իմ խոսքերի վրա ու ասաց իմ մայրիկին.

— Հավանաբար, ձեր տղան ավազակ կդառնա:

Այդ ժամանակ մայրիկս գրկեց ինձ ու ասաց այն մայրիկին.

— Չհամարձակվեք այդպես խոսել իմ տղայի մասին: Ավելի լավ է վերցրեք ձեր ճղրած երեխային, գնացեք ու այլևս երբեք մեզ մոտ մի եկեք:

Այն մայրիկը ասաց.

— Ես այդպես էլ կանեմ: Ձեզ հետ նստել կամ փշերի վրա նստել, միևնույն բանն է:

Այդ ժամանակ ևս մեկը՝ երրորդ մայրիկը ասաց.

— Ես էլ կգնամ: Իմ աղջիկը կոտրած ձեռքով տիկնիկի արժանի չէ:

Իմ քույրիկ Լոլյան բացականչեց.

— Դուք էլ կարող եք գնալ ձեր ճղրած երեխայի հետ: Այդ ժամանակ կոտրած ձեռքով տիկնիկը ինձ կմնա:

Այդ պահին մորս ձեռքերի վրայից ես գոչեցի.

— Ընդհանրապես, դուք բոլորդ էլ կարող եք գնալ, և այդ ժամանակ բոլոր խաղալիքները մեզ կմնան:

Եվ այդ ժամանակ բոլոր հյուրերը սկսեցին հեռանալ:

Եվ մեր մայրիկը զարմացավ, որ մենք մենակ մնացինք:

Բայց հանկարծ սենյակ մտավ մեր հայրիկը:

Նա ասաց.

— Նման դաստիարակությունը կործանում է իմ երեխաներին: Ես չեմ ցանկանում, որ նրանք կռվեն, վիճեն և դուրս վռնդեն հյուրերին: Կյանքում նրանց համար շատ դժվար կլինի, և նրանք միայնության մեջ կմեռնեն:

Եվ մայրիկը մոտեցավ տոնածառին ու հանգցրեց բոլոր լույսերը: Հետո ասաց.

— Անմիջապես պառկեցեք քնելու, իսկ վաղը բոլոր խաղալիքները ես կվերադարձնեմ հյուրերին:

Եվ ահա, երեխաներ, այդ օրվանից անցել է երեսունհինգ տարի, և ես այսօր էլ շատ լավ հիշում եմ այդ տոնածառը:

Եվ այդ բոլոր երեսունհինգ տարիների ընթացքում, երեխաներ, այլևս ոչ մի անգամ չեմ կերել ուրիշի խնձորը, ոչ մի անգամ չեմ հարվածել ինձանից թույլին: Եվ հիմա բժիշկներն ասում են, որ դրա շնորհիվ եմ ես համեմատաբար ուրախ և բարեհոգի:

Թարգմ. ԳՐԻԳՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆԻ

ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ

# Տղան ու ծովը

Ծովն ալեկոծ էր, ու ծովի ափին,
Ավազների մեջ, լուռ, ինքնամոռաց
Բերդ էր կառուցում մի թխաչ մանկիկ
Գլաքարերով՝ ծովի դուրս բերած:

Ես երկար եմ քայլել աշխարհով,
Գուցե իրավունք ունեմ անգամ
Իմ կորուստներս հաշվի առնելով,
Խորհուրդ տալ ափին խաղացող մանկան:

Եվ ես ասացի, որ չարժե այդքան
Ծովին շատ մոտիկ բերդեր կառուցել:
Եվ ես ասացի՝ ջրերը կգան
Եվ բերդերը քո ծովը կլցնեն...

Ոչի՛նչ:— Ինձ ասաց տղան հնգամյա,—
Ոչինչ, ի՞նչ կա որ, կշինեմ նորից:
Թող ալիքները կատաղեն հիմա
Եվ կատաղությամբ դուրս ելնեն ծովից...

Կառուցում էր նա,
Խոսում ինքն իր հետ:
Ինքն իր հետ վիճում ու համաձայնում:
Ամրանում էին դուռ ու դիտակետ,
Եվ բերդն էր կամաց-կամաց բարձրանում:

Ես խորհում էի. «Վաղն առավոտյան
Ծովը այս բերդից հետք չի թողնելու...
Բայց թող օրհնվի կամքը այս մանկան՝
Հայտնի չէ դեռ, թե ով է հաղթելու...»:—

Աշխարհում գործից ու փորձից բացի,
Ինչ լավ է, որ կա կամք ու մոռացում,
Եվ ինչ լավ է, որ (կատակ մի կարծիր)
Ծովն ավերում է, տղան՝ կառուցում,
Ծովն ավերում է, տղան՝ կառուցում,
Ծովն ավերում է, տղան՝ կառուցում...

Նկարը՝ ԱՆԴՐԱՆԻԿ ՄԻԿԱՅԵԼՅԱՆԻ




**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**
Բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ԶՐՈՒՅՑ ՀԻՆԳԵՐՈՐԴ

# Հայաստանի հնագիտությունը

Հայկական լեռնաշխարհը, իրոք, լեռնային մի կղզի է, շրջակա երկրների համեմատ շատ ավելի բարձր դիրք գրաված:

Հնագետները այդ լեռնաշխարհում բազմաթիվ որոնումներ են կատարել և հողի տակից գտել են քաղաքներ, գյուղեր, տաճարներ, գործիքներ, արվեստի առարկաներ:

Հնագիտությունը զբաղվում է մարդկանց պատմությանը վերաբերող նյութերի հայտնաբերմամբ, իսկ հին կենդանիների ուսումնասիրությամբ զբաղվում է հնէաբանությունը:

Հնագետները գետնի տակից հանել են 3 միլիոն տարի առաջ ապրած մարդկանց ոսկորներ: Այդ հեռավոր ժամանակներից էլ սկսվել է մարդկության պատմությունը: Մարդու գլխավոր հատկանիշներից մեկն էլ աշխատանքի գործիքներ պատրաստելն է: Ամենահին մարդիկ քարե գործիքներ էին պատրաստում, հետո սկսեցին պղինձը գործածել, ավելի ուշ՝ բրոնզը, երկաթը: Դրա համաձայն էլ հնագետները մարդկության պատմության հնագույն և հին ժամանակաշրջանը մասերի են բաժանում. 1) հին քարի դար (կամ պալեոլիթ, որ հունարեն նշանակում է հին քար): Այս ժամանակաշրջանն սկսվել է մեզնից մոտ 3 միլիոն տարի առաջ, մարդկության պատմության սկզբից և տևել է մինչև մ. թ. ա. մոտ 11-րդ հազարամյակը: Այդ ժամանակ մարդիկ քարերը կոպիտ ձևով սրում էին և օգտագործում որպես գործիք ու զենք, զբաղվում էին որսորդությամբ, ինչպես և պտուղներ էին հավաքում: Քոչվոր էին, բնակվում էին քարայրներում ու կիրճերում:

2) Միջին քարի դար (կամ մեզոլիթ, հունարեն նշանակում է միջին քար). սկսվում է մ. թ. ա. մոտ 11-րդ հազարամյակից և տևում մինչև մ. թ. ա.մոտ 9—8-րդ հազարամյակները: Այս ժամանակաշրջանում մարդիկ քարերը ավելի վարպետորեն էին տաշում ու սրում և պատրաստում քարե դանակ, կացին ու այլ գործիքներ: Ոսկորից ու եղջյուրներից էլ էին զանազան գործիքներ պատրաստում: Գործածում էին նետուաղեղ: Զբաղվում էին ոչ միայն որսորդությամբ, ձկնորսությամբ, պտուղ հավաքելով, այլև պատրաստում էին նաև քարե մանգաղներ ու հնձում վայրի ցորեն, գարի: Բնակվում էին ոչ միայն քարայրների մեջ, անտառների խորքերում, այլև՝ գետնափոր տներում:

3) Նոր քարի դար (կամ նեոլիթ, հունարեն նշանակում է նոր քար). սկսվել է մ. թ. ա. 9—8-րդ հազարամյակներից և տևել մինչև մ. թ. ա. 6-րդ հազարամյակը: Այս ժամանակաշրջանում քարից ու ոսկորից ավելի հղկված գործիքներ ու զենքեր էին պատրաստում, գործածում էին լաստեր, նավակներ, սայլեր: Սկսում են մշակել հողը, ցանել գարի, ցորեն, ընտելացնում են կենդանիներ՝ այծ, ոչխար, խոզ և այլն: Մարդիկ ավելի նստակյաց են դառնում, առաջ են գալիս մըշտական բնակավայրեր: Սկսվում է խեցեգոր-

ծությունը՝ կավից ամաններ էին պատրաստում: Կառուցում էին տներ: Բնական պղնձից, առանց հալելու, իրեր էին պատրաստում: Ժամանակաշրջանի վերջում նաև հալում էին պղինձը:

4) Պղնձի—քարի դար. (էնեոլիթ) սկսվում է մ. թ. ա. 5-րդ հազարամյակից և տևում մինչև մ. թ. ա. 4-րդ հազարամյակի վերջը: Այս ժամանակաշրջանում պղնձից բազմատեսակ գործիքներ և զենքեր էին պատրաստում: Գործածում էին նաև ոսկին, արծաթը իբրև զարդ: Երևան են գալիս քաղաքներ, զարգանում է խեցեգործությունը: Որոշ տեղերում բարձր զարգացման է հասնում ճարտարապետությունը, նկարչությունը, քանդակագործությունը, ոսկերչությունը: Իսկ ամենակարևորն այն է, որ 4-րդ հազարամյակի վերջերում երևան են գալիս գրի ամենահասարակ տեսակները:

5) Բրոնզի դար. սկսվում է մ. թ. ա. 3-րդ հազարամյակի սկզբից և տևում մինչև մ. թ ա. 1-ին հազարամյակի սկիզբը: Պղնձի և անագի համաձուլումից ստանում էին բրոնզ, որը գործիքներ ու զենքեր պատրաստելու համար շատ ավելի ամուր էր, քան պղինձը: Մարդիկ սկսում են գրել: Որոշ երկրներում բարձր զարգացման է հասնում մշակույթը: Որոշ վայրերում սկսում են նաև երկաթ ձուլել և երկաթե գործիքներ պատրաստել:

6) Երկաթի դար: Այս անունով կոչվում է մի ժամանակաշրջան, որ սկիզբ է առնում մ. թ. ա. մոտ 10-րդ դարից և տևում մի քանի դար: Այս ժամանակաշրջանում ավելի առատ է գործածվում երկաթը՝ գործիքներ, զենքեր պատրաստելու համար:

Աշխարհի բոլոր երկրների համար այս բաժանումները նույնը չեն: Օրինակ, մի տեղ բրոնզի դարը կարող է ավելի ուշ սկսված լինել, մի այլ տեղ՝ ավելի շուտ և այլն:

Հայաստանի շատ վայրերում գտնված են հին քարի դարից մնացած գործիքներ. դրանք մեծ մասամբ օբսիդիան կոչվող քարից (սատանի եղունգ) պատրաստված գործիքներ են: Մեծ Հայքի ամբողջ տարածքում, տարբեր տեղեր՝ Արագածի մոտ՝ Արտին լեռան շրջակայքում, Արզնու մոտ՝ Հրազդանի աջ ափին, Հատիս լեռան մոտ, Սասունում, Խարբերդում (Ծոփք), Երևանի ու Լուսակերտի քարայրներում, Շանիդար քարայրում (Մեծ Հայքի հարավ), Ուրմիա լճի մոտ և այլ վայրերում հայտնաբերվել են հին քարի դարի մարդկանց կայաններ և քարե շատ գործիքներ:

Միջին և նոր քարի դարի մարդկանց կայաններ ու գործիքներ են հայտնաբերվել Թալինի շրջանում (Բառոժ, Ջաղաներ), Արարատյան դաշտում և շատ այլ վայրերում:

Այս ժամանակներից է, որ մարդիկ սկսում են ժայռերի վրա նկարել զանազան պատկերներ՝ այծ, մարդ և այլն: Ժայռապատկերներ կան Հայաստանի շատ լեռներում՝ Գեղամա, Սյունիքի, Դարանաղյաց և այլն:

Հայկական լեռնաշխարհի հարավում, Դիարբեքիր քաղաքի մոտ, վերջերս գտնվեց նոր քարի դարից պահպանված մի բնակավայր (մ. թ. ա. 8-րդ հազարամյակ), որտեղ բնական (հում) պղնձից պատրաստել են գոր-

Մեծ Հայքի սահմանները



ծիքներ: Դա մարդու կողմից մետաղի մշակման առաջին օրինակն է: Այս ժամանակաշրջանում Հայկական լեռնաշխարհում բնակվում էին հնդեվրոպական մայր ժողովրդի ցեղերը՝ մեր հեռավոր նախնիները:

Պղնձի-քարի դարի բնակավայրեր են գտնըվել Էջմիածնի, Խաթունարխի, Կարինի, Վանի, Նախիջևանի մոտակայքում և շատ այլ վայրերում: Այս ժամանակաշրջանում է (մ. թ. ա. 5—4-րդ հազարամյակ), որ Փոքր Ասիայի արևելքում ու Հայկական լեռնաշխարհի տարածքում հնդեվրոպական մայր ժողովուրդը մասերի է բաժանվում, և առանձնացած հայկական ցեղերը շարունակում են իրենց ինքնուրույն գոյությունը. սկսվում է բուն հայոց պատմությունը: Հատկապես կարևոր է Երևանի Շենգավիթ թաղամասում հայտնաբերված բրոնզեդարյան բնակավայրը: Բրոնզեդարյան շրջանից գտնվել են քաղաքներ, բերդեր, կավե բազմատեսակ ամաններ, մետաղե գործիքներ, մետաղաձուլական սարքեր, արվեստի շատ առարկաներ:

Հայկական լեռնաշխարհում բրոնզի դարը հայոց պատմության այն ժամանակաշրջանն էր, երբ հայկական առանձին ցեղերից կազմըվում էին ցեղային խոշոր միավորումներ, որոնք պետության նախատեսակն էին: Բրոնզի դարի երկրորդ շրջանում, մ. թ. ա. 2-րդ հազարամյակի կեսերին, կազմվում է նաև հայերի պետական միավորում:

Բրոնզի դարի վերջում և երկաթի դարի ամբողջ ընթացքում Մեծ Հայքի տարածքում կազմվում են հայկական հզոր պետություններ, որոնց մասին դեռ կխոսենք:

Հայաստանի հնագիտությունը ցույց է տալիս, որ մարդկային պատմության բոլոր ժամանակաշրջաններում Մեծ Հայքի ամբողջ տարածքում մարդիկ են բնակվել, որ Հայաստանը խեցեգործության հայտնաբերման, կենդանիների ընտելացման, բույսերի մըշակման, արհեստական ոռոգման տեսակետից աշխարհի առաջին երկրներից է եղել, իսկ մետաղամշակման գործում եղել է ամենաառաջինը:

Հայկական լեռնաշխարհում հնագույն դարերից մինչև նոր ժամանակները զարգացել է միևնույն մշակույթը, որն ունեցել է զարգացման տարբեր փուլեր:

Մեծ Հայքի տարածքում հնագետները գըտել են նաև մ. թ. ա. 5-րդ հազարամյակից սկսած տարբեր ժամանակների վերաբերող մարդկային ոսկորներ ու գանգեր, որոնք պատկանում են մարդաբանական արմենոիդ (հայկական) տեսակին:

(շարունակելի)



Մեր ուսուցիչները մեր գյուղացիներից են, մեր գյուղերն իրար շատ մոտ են, և իրար մոտ չորս-հինգ գյուղը համարյա մի գյուղի նման իրար ճանաչում են: Մեր գյուղը փոքր է, և աշակերտները ութամյակն ավարտելով՝ մինչև հիմա էլ միջնակարգի վկայականն ստանում են հարևան Նարդևան մեծ գյուղում: Կան ուսուցիչներ, որ մի քանի գյուղերի դպրոցներում են դասավանդում: Դրանք հատկապես հայոց լեզվի և գրականության ուսուցիչներն են, որովհետև մեր հեռավոր Ծալկայի շրջանում (Վրացական ՍՍՀ) ընդամենը տասներկու հայկական գյուղ կա, և գյուղացիները իրենք են խնդրում ուսուցիչներին, որպեսզի նրանք հասցնեն բոլոր գյուղերում դասավանդել: Ուսուցիչները թեպետ մեր գյուղերից են, բայց բարբառով չեն խոսում և հենց այդ՝ մերից տարբեր լեզուն, որ մենք իսկական հայերեն ենք համարում, որովհետև մեր դասագրքերի լեզուն է, մեր աչքում նրանց դարձնում է ուրիշ, այսինքն՝ ուսուցիչ, ոչ թե սովորական մարդ՝ սովորական մարդու կենսագրությամբ, այլ այնպիսի մեկը, որի կյանքը սկիզբ ու վերջ չունի՝ միշտ եղել է, կա և լինելու է հենց այդպիսին՝ ուսուցիչ:

Գարեգին Նուրբեկյանի ձեռքի տակով շատ սերունդներ են անցել: Դժվար է ասել, թե նա մանկավարժական ինչ հըմտություններով էր մեր դասերը դարձնում սիրելի ու այնպես հարազատ, կարծես դասը հենց մեր մասին լիներ: Չթվարկենք, թե նա ինչ խրախուսանքների ու պարգևների է արժանացել: Ասենք միայն, որ մեր տասներկու գյուղերի բնակչությունը նրա մասին հյուսել է այնպիսի շքեղ, կենդանի պատմություններ, որոնք ուսուցչի և մարդու ամենամեծ գնահատականներն ու պարգևներն են:

Աշակերտների դեռ շատ սերունդների պիտի մայրենի սովորեցնի Նարդևանի միջնակարգ դպրոցի հայոց լեզվի և գրականության ուսուցիչ Գարեգին Նուրբեկյանը, և նրա մասին ամեն պատմող պիտի սկսի այսպես՝ նա 1957 թվականին ավարտել է Թբիլիսիի Պուշկինի անվան մանկավարժական ինստիտուտի հայկական բանասիրության բաժինը և վերադարձել հայրենի գյուղ, ընտանիք կազմել ու մինչև հիմա՝ առաջին օրերի պես նվիրված, շարունակում է իր մեծ գործը: Եվ պատմողը պիտի ակամայից շփոթվի՝ ուրիշ ի՞նչ մեծ փաստ նշի նրա կենսա-



# Ինչպես ծաղիկն է բերքն իրեն բացում

գրությունից: Ինչ էլ ասի, պիտի լինի աշակերտների մասին և ոչ թե ուսուցչի, որովհետև նա շատ խորը կա իր աշակերտների մեջ:

Գյուղում դաշտի աշխատանքը ևս դաս է՝ աշակերտները թե՛ հնձի, թե՛ խոտ հավաքելու և թե՛ կարտոֆիլի բերքահավաքին գնում են այնպես, ինչպես գնում են դասի: Նրանց «բրիգադիրը» ուսուցիչն է: Աշակերտները մեծանում, իսկ ուսուցիչները անընկատելի ծերանում են այդպես միասին: Ահա այս միասնության մեջ ոչ մի կերպ չի առանձնանում Գարեգին Նուրբեկյանի կենսագրությունը, որպեսզի կարելի լինի մանրամասն ներկայացնել նրա օր-օրի անաղմուկ անցնող տարին, որը գործ է մերթ դաշտում, մերթ դպրոցում, և միշտ աշակերտների հետ: Եվ այդպես տարեցտարի ու անընդհատ նրանք մեր շրջանում հանդես եկած առաջին ուսուցիչների հին ավանդույթով մեզ սովորեցնում են մեր մայրենին ու այն ամենը, ինչ գիտեն՝ անգամ հունձ անելն ու հող մշակելը, որ մեր գործն է արյունով:

Փակում եմ աչքերս ու տեսնում. ահա Գարեգին Նուրբեկյանը և իր բարձր դասարանների աշակերտները Սուրբ Հովհաննես սարի տակ՝ հովիտներում հունձ են անում: Լրիվ բացված ծաղիկների վրա խաղաղ պտտվում է մեղուն, արևը վերևում ավելի է ուժեղանում, բացում, թուլացնում ծաղիկների առէջքները, և մեղուն շատ հմտորեն ու համբերատար նեկտար է հավաքում: Սարերը, հեռու ներքևներում երևացող տները խաղաղ են ու դատարկ. մարդիկ սարալանջի խոտհարքում իրենց գործին են, նախիրներն ու հոտերը սարերի ու հովիտների արոտներում իրենց գործին են, թռչունները նոր-նոր թռչել սովորող ձագերի հետ իրենց գործին են, և բոլորը բռնված նույն ջանասեր-տագնապով՝ միմյանց համարյա չեն նկատում: Այդ խաղաղ լըռության և ծաղիկների, արեգակի, մոտիկ Փարվանա լճի, խոտերի ու երկնքի կապույտ գույների մեջ սարալանջի խոտհարքի շուրջը հավասար պտույտներով համաչափ շարժվում են հնձվորները՝ իրենց ետևից թողնելով անընդհատ երկարող կանաչ, հաստ լասերը: Առջևից անպայման ծեր, հին հնձվոր է գնում՝ նա խոտհարքների բոլոր սահմանները գիտի, հետո գալիս են օրական հեկտար-հեկտարուկես հնձող տղամարդիկ, ապա՝ պատանիներն ու ամռանը արձակուրդ եկած ուսանողները: Եվ գերանդիների փայլն ու սուլոցն են խաղում խոտերի մեջ, խոտհարքի հարթ երեսին լայն պըտըտվող գերանդու ազատ հրճվանքն ու հնձվող խոտի հրաշալի թախիծն են նըստում նրանց սրտերում: Ութից տասներորդ դասարանցի աշակերտները իրենց գործն են սովորում, և չնայած ուսուցիչը՝ իրենց ընկեր Նուրբեկյանը, նրանց հետ ընկերոջ պես զրուցելով, ընկերոջ պես գերանդի քաշելով է սովորեցնում, այնուամենայնիվ, կարծես այդ ամենը նրանն են՝ նա է դրանք ճիշտ պատասխանի նման տալիս իրենց, որովհետև ծաղիկը մեղվին նեկտար տալիս հասուն կողմից է բացում թերթերը, և մեղուն իր գործն անում է այնպես, ինչպես ծաղիկն է բացում իրեն՝ այսօր այս առէջքից, վաղը՝ այն:

**ՎԱՐՈՒԺԱՆ ԱՅՎԱԶՅԱՆ**

# ԾՈՎԱՅԻՆ ԿԱԹՆԱՍՈՒՆՆԵՐԻ ՏԱՐՕՐԻՆԱԿ ՎԱՐՔԸ

Մեր դարի 60-ական թվականներից սկսած կենդանաբան-էկոլոգները բազմաթիվ տեղեկություններ են ստանում ծովային հսկա կաթնասուններ կետերի, ինչպես նաև դելֆինների հանելուկային վարքի մասին։ Ավելի ու ավելի հաճախակի են դառնում այդ կենդանիների «ինքնասպանության» դեպքերը։ Զանգվածային կարգով ցամաք նետվելու այդ տարօրինակ երևույթը նկատվել է Կալիֆոռնիայի ափերի մոտ. 140 փոքր կետեր հանկարծակի ցամաք են նետվել, ակնհայտորեն այլևս օվկինոս չվերադառնալու «մտադրությամբ»։ Այն ժամանակ ԱՄՆ-ի էկոլոգները իսկույն տագնապ բարձրացրին և բնության պահպանության ազգային կազմակերպությունների օգնությամբ փորձեցին կենդանիներին կրկին օվկիանոս տեղափոխել։ Սակայն զարմանալի բան. փրկված կենդանիները կրկին ցամաք էին վերադառնում, հրաժարվելով օվկիանոսից։ Սակավաթիվ կենդանիների միայն հաջողվեց փրկել։

Երկար ժամանակ էկոլոգները չէին կարողանում բացատրել այս տարօրինակ երևույթը։ Մի բան պարզ էր, որ էկոլոգիական ինչ-որ գործոնի փոփոխության հետևանքով խախտվել է կենդանիների բնականոն կյանքը։ Շատերի կարծիքով պատճառը համաշխարհային օվկիանոսի աղտոտումն է, որը հատկապես վերջին տարիներին հսկայական չափեր է ընդունել։ Ենթադրվում էր, որ ծովային կաթնասուններին հատկապես դուր չի գալիս օվկիանոսների նավթային աղտոտումը։ Սակայն հետագայում պարզվեց, որ ինքնասպանության պատճառը նավթը չէ։ Օվկիանոսի շատ հատվածներում, որտեղ նավթային աղտոտվածությունը մեծ չափերի է հասել, ծովային կաթնասունները լուրջ անհանգստության նշաններ չեն ցուցաբերում։

Էկոլոգներից մեկն այն միտքը հայտնեց, որ կետերի ինքնասպանության պատճառը պոլիէթիլենային թաղանթներն են։ Ինչպես հայտնի է, ծովային կաթնասունների կերային օրաբաժնում մեծ դեր են խաղում մեդուզաները։ Օրվա ընթացքում նրանք սովորաբար մի քանի տասնյակ կիլոգրամ մեդուզա են խժռում։ Եվ ահա, օվկիանոսում լողացող պոլիէթիլենային թաղանթները մեդուզայի տեղ դնելով, կետերը և դելֆինները կուլ են տալիս դրանք, որի հետևանքով խցանումներ են առաջանում կենդանիների մարսողական համակարգում, խիստ նեղություն պատճառելով նրանց։ Գիտնականների կարծիքով, պոլիէթիլենային թաղանթները խան-



Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ՆԱՐԱՊԵՏՅԱՆԻ

գարում են նաև կենդանիների շնչառությունը, ծածկում նրանց խռիկները:

Վերջերս «Նյու Յորք թայմս» թերթը նոր տեղեկություններ հաղորդեց՝ ելնելով ամերիկյան հետազոտողների վերջին աշխատանքներից: Կալիֆոռնիայի ափերին ինքնասպանություն գործած 27 դելֆինների մարմնի մանրազնին ուսումնասիրությունը հաստատեց, որ նրանց զանազան օրգաններում և հյուսվածքներում մեծ քանակությամբ ԴԴՏ կա: Ինչպես հայտնի է, այդ խիստ թունավոր նյութը մինչև վերջերս ամենուրեք օգտագործվում էր որպես բազմակողմանի ներգործության թունաքիմիկատ՝ գյուղատնտեսական կուլտուրաների վնասատուների դեմ պայքարի գործում: Այդ փաստը էկոլոգների համար հիմք ճառայեց ենթադրելու, որ ծովային կաթնասունների տարօրինակ վարքի պատճառը նրանց օրգանիզմում այդ թունավոր նյութի աստիճանական կուտակումն է: Գտնում են, որ ԴԴՏ-ն առաջին հերթին ազդում է կենդանիների ստորջրյա կողմնորոշման վրա:

Կալիֆոռնիական գիտնականների հիպոթեզը մեծ շփոթություն առաջացրեց ոչ միայն գիտական շրջաններում: Այդ վտանգավոր թունաքիմիկատը, որը նախկինում լայն չափերով էր օգտագործվում, արդեն վաղուց է, ինչ պաշտոնապես արգելված է ԱՄՆ-ի տերիտորիայում: Հետևաբար՝ կամ առանձին կազմակերպություններ շարունակում են գաղտնաբար օգտագործել այն, կամ էլ օվկիանոս են նետում ինչ-որ այլ երկրներում, և ծովային հոսանքները դրանք հասցնում են Կալիֆոռնիայի ափերը: Հայտնի է, որ մի շարք երկրներում ԴԴՏ-ն դեռևս պաշտոնապես հանված չէ գործածությունից:

Գիտնականների մի մասն էլ այն միտքն է հայտնում, որ ԴԴՏ-ի թունաքիմիկատի հայտնաբերումից անցել է 40 տարի, և այդ տարիների ընթացքում աշխարհի երկրներում այնքան շատ ԴԴՏ է արտադրվել ու օգտագործվել, որ համաշխարհային օվկիանոսի աղտոտումը համատարած բնույթ է ստացել: Չպետք է մոռանալ նաև, որ ԴԴՏ-ն իր ազդեցությունը պահպանում է 40 տարի և դեռևս վաղ է դրա արգելման դրական հետևանքներին սպասելը:

Բոլորովին վերջերս հանդես եկավ մի նոր կարծիք, այն է՝ ծովային կաթնասունների զանգվածային ինքնասպանության պատճառը կարող է լինել նաև երկրագնդի մագնիսական դաշտի փոփոխությունը: Էկոլոգները գտնում են, որ կետերը և դելֆինները օվկիանոսային անդաստաններում և մեծ խորություններում կողմնորոշվում են մագնիսական դաշտի միջոցով: Ինչպես հայտնի է, վերջին ժամանակներս բնական և հատկապես անտրոպոգեն պատճառներով երկրագնդի մագնիսական դաշտերը մեծ փոփոխություններ են կրում: Հենց դրանք էլ հավանաբար խանգարում են այդ կենդանիներին ճիշտ կողմնորոշվելու, և արդյունքը լինում է նրանց տարօրինակ վարքը:

Ինքնըստինքյան հասկանալի է, որ կենդանիները ծանրակշիռ պատճառներ ունեն այդպիսի ծայրահեղ միջոցի դիմելու համար: Որն էլ որ լինի ծովային կաթնասունների ինքնասպանության պատճառը, միևնույն է, դա յուրջ տագնապի տեղիք պետք է տա: Մարդու գործունեության սահմանները շատ են մեծացել, և բնության էկոլոգիական համակարգի խախտումները արդեն աղետալի բնույթ են կրում: Դելֆինները և կետերը տագնապի ազդանշան են տալիս: Ցավոք, չափից դուրս շատ է նաև այն կենդանիների և բույսերի տեսակների թիվը, որոնք լռելյայն ոչնչանում են՝ չդիմանալով անտրոպոգեն ճնշման աղետալի մասշտաբներին:

**ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
Կենսաբանական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր





ԷԼԻՆՈՐ ՖԱՐՋՆ

# ԹԻՄԵՐԻ ԸՆՏԱՆԻՔԸ

(Անգլիական հեքիաթ)

Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ

Այն ժամանակներից անցել է ուղիղ հարյուր տարի կամ գուցե մի քիչ շատ, գուցե քիչ, ո՞վ գիտե: Անգլիայի հենց կենտրոնում և կամ մի փոքր հյուսիս կամ հարավ, ընկած էր երջանիկ մի գյուղակ, երջանիկ նրանով, որ այնտեղ ապրում էր Թիմերի ընտանիքը:

Նրանք հինգն էին՝ Ծերուկ Թիմը, Մեծ Թիմը, Փոքր Թիմը, Պատանի Թիմը և Պըստլիկ Թիմը, և բոլորն էլ ծնված օրվանից իմաստուն էին: Գյուղակում հենց մի բան էր լինում, թեկուզ որևէ տհաճություն, մարդիկ ասում էին. «Խորհրդակցենք Թիմերի հետ, նրանք ամեն ինչ գիտեն՝ չէ՞ որ նրանք իմաստուն են ի ծնե»:

Ահա, մի անգամ ֆերմեր Ջոնը նկատում է, որ իր նոր կառուցած շտեմարանում գընչուներ են գիշերել: Երևի կարծում եք, թե նա անմիջապես ոստիկան կանչեց և նրանց դատարա՞ն քարշ տվեց: Ո՛չ, նա որոշեց նախ խորհրդակցել Ծերուկ Թիմի հետ:

Եվ գնաց Ծերուկ Թիմի մոտ, որն ութսուն տարեկան էր, և նրան գտավ բուխարիկի կողքին նստած:

— Բարի լույս, Ծերուկ Թիմ,— ասում է ֆերմեր Ջոնը:

— Բարև, բարև, ֆերմեր Ջոն:

— Ծերուկ Թիմ, գնչուներն էլի են հայտնըվել իմ շտեմարանում,— տեղեկացնում է ֆերմեր Ջոնը:

— Ասում ես՝ էլի՞,— բացականչում է Ծերուկ Թիմը:

— Այո, հենց այդպես,— հաստատում է ֆերմեր Ջոնը:

— Ահա, թե ինչ,— ասում է Ծերուկ Թիմը:

— Դու իմաստուն ես ի ծնե, Ծերուկ Թիմ, ի՞նչ կանեիր դու իմ փոխարեն:

— Քո փոխարեն ես կխորհրդակցեի Մեծ Թիմի հետ: Նա նույնպես իմաստուն է ի ծնե, բայց ընդամենը վաթսուն տարեկան է, այնպես որ ես քսան տարով իմաստությունից հեռու եմ, քան նա:

Եվ ֆերմեր Ջոնը գնում է որոնելու Մեծ Թիմին, որը Ծերուկ Թիմի որդին էր, և նըրան գտնում է ցանկապատի անցատեղում:

— Բարի լույս, Մեծ Թիմ,— ողջունում է ֆերմեր Ջոնը:

— Բարև, բարև,— ձայն է տալիս Մեծ Թիմը:

— Իմ շտեմարանում էլի գնչուներ են հայտնվել,— գանգատվում է ֆերմեր Ջոնը,— Ծերուկ Թիմը ինձ ուղարկեց քեզ մոտ: Ի՞նչ կանեիր դու իմ փոխարեն: Չէ՞ որ դու իմաստուն ես ի ծնե:

— Քո փոխարեն ես կխորհրդակցեի Փոքրիկ Թիմի հետ, axի նա նույնպես իմաստուն է ի ծնե և ընդամենը քառասուն տարեկան է, նա քսան տարով իմաստությանն ավելի մոտ է, քան ես:

Ֆերմեր Ջոնը գնում է որոնելու Փոքրիկ Թիմին, որը Մեծ Թիմի որդին էր, և նրան գտնում է խոտանոցում:

— Բարի լույս, Փոքրիկ Թիմ,— ասում է ֆերմեր Ջոնը:

— Բարև, բարև, ֆերմեր Ջոն:

Ֆերմեր Ջոնը նորից է պատմում իր պատմությունը:

— Մեծ Թիմը ինձ խորհուրդ տվեց դիմել քեզ՝ չէ՞ որ դու իմաստուն ես ի ծնե:

— Պատանի Թիմը նույնպես իմաստուն է ի ծնե, բայց նա ընդամենը քսան տարեկան է: Դու նրանից կարող ես ստանալ իմաստություն, որն ավելի թարմ է, քան իմը:

Ֆերմեր Ջոնը գնում է որոնելու Պատանի Թիմին, որը Փոքր Թիմի որդին էր, և նրան գտնում է ալրաղացի մոտ:

— Բարի լույս, Պատանի Թիմ:

— Բարև, բարև, ֆերմեր Ջոն,— գլխով է անում Պատանի Թիմը:

Ֆերմեր Ջոնը չորրորդ անգամ է պատմում իր պատմությունը և վերջացնում այսպես.

— Փոքր Թիմը գտնում է, որ դու բոլորից լավ գիտես, թե ես ինչպես վարվեմ:

— Իմ որդին, որը ծնվել է անցած ամիս, նույնպես իմաստուն է ի ծնե, և դու նրա մոտ կգտնես այսպես ասած իմաստության ակունքը:

Եվ ֆերմեր Ջոնը գնում է որոնելու Պստլիկ Թիմին, որը Պատանի Թիմի որդին էր, և նրան գտնում է օրորոցում՝ մեծ մատը ծծելիս:

— Բարի լույս, Պստլիկ Թիմ,— ողջունում է ֆերմեր Ջոնը:

Պստլիկ Թիմը մատը հանում է բերանից, բայց ոչինչ չի պատասխանում:

— Պստլիկ Թիմ, գնչուները էլի են հավաքվել իմ նոր շտեմարանում,— ասում է ֆերմեր Ջոնը:— Ի՞նչ կանեիր դու իմ փոխարեն:

Պստլիկ Թիմը մատը նորից դնում է բերանը և շարունակում լռել:

Եվ ֆերմեր Ջոնը լուռ գնում է տուն ու այլևս ոչ ոքի ոչինչ չի ասում:

Գնչուները շարունակում են իրենց ճանապարհը և հաջորդ գյուղում գիշերելու են կանգնում ֆերմեր Ջորջի շտեմարանում, բայց ֆերմեր Ջորջը կանչում է ոստիկանին և նրանց քարշ տալիս դատարան: Մի շաբաթ անց նրա շտեմարանում հրդեհ է ընկնում, և գողանում են հավիկ-չալպուտուրիկին:

Իսկ մեր այս երջանիկ գյուղակը շարունակում է մնալ երջանիկ, և ֆերմեր Ջոնը անչափ ուրախանում է իր անվնաս մնացած շտեմարանով: Եվ այս բոլորը շնորհիվ Թիմերի, որոնք իմաստուն են ի ծնե:

Թարգմ. ՎԱՐՈՒԺԱՆ ԱՅՎԱԶՅԱՆԻ

## ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...

Իսկ Մոսկվայում քանի՞ բուսաբանական այգի կա շատերը կպատասխանեն՝ երկու: ՍՍՀՄ Գիտությունների ակադեմիայի գլխավոր և Մոսկվայի Լենինի ու Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Մ. Վ. Լոմոնոսովի անվան պետական համալսարանի բուսաբանական այգիները: Բայց Մոսկվայում հինգ այգի կա: Ահա մնացած երեքը: Դեղաբույսերի համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի դեղաբույսերի բուսաբանական այգին (ԴՀԻ): Այն տարածված է մայրաքաղաքից հարավ գտնվող Մոսկվորեցկո Օկայան բարձրադիր հարթավայրի վրա, ուր աճում են 2400-ից ավելի տեսակներ: Իրենց պրակտիկան այնտեղ են անցկացնում երկրի բժշկական ինստիտուտների ուսանողները:

Մոսկովյան I, Լենինի և Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Ի. Մ. Սեչենովի անվան դեղաբույսերի Բուսաբանական(ը) գտնվում է Մոսկվա գետի ձախ ափին, Պոկլոննայա սարի դիմաց: Բուսայգում մոտ 500 տեսակ դեղաբույս կա՝ բժշկության մեջ օգտագործելու նպատակով ցանված: Եվ, վերջապես, երրորդը՝ Մոսկովյան Լենինի և Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր, Կ. Ա. Տիմիրյազևի անվան գյուղատնտեսական ակադեմիայի Բուսաբանական այգին է: Բաց բնահողում այստեղ մեկ ու կես հազար տեսակի բույս է աճում, իսկ ջերմոցներում՝ 500 տեսակ: Ակադեմիայի դասախոսները ու ուսանողները այգում գիտահետազոտական աշխատանք են կատարում:






Մի հանդիսավոր համերգի ժամանակ հռչակավոր դիրիժորի ղեկավարությամբ նվագախումբը կատարում էր Բեթհովենի «Լեոնորան»: Կոմպոզիտորի մտահղացման համաձայն ստեղծագործության մեջ երկու տեղ բեմի ետևում պետք է նվագեր փողը, բայց այն այս անգամ լռում էր:

Նվագողները տարակուսեցին՝ ի՞նչ կարող էր պատահել փողհարի հետ, նա սովորաբար այնքան կարգապահ է: Նվագախմբի վերջին հնչյունների հետ զայրացած դիրիժորը նետվում է դեպի կուլիսները, և աչքերի առջև բացվում է հետաքրքիր մի տեսարան՝ երաժիշտը անօգնական թպրտում էր հաղթանդամ հրշեջի գրկում, որը չարագույժ շշուկով կրկնում էր. «Ձեզ ասում եմ, որ հիմա համերգ է, չի կարելի աղմկել»:

Առաջին դիրիժորներից մեկը, որ ղեկավարում էր նվագախումբը առանց նոտաների, հռչակավոր Վագներն էր: Մի անգամ նա, որպես դիրիժոր, հյուրախաղերի մեկնեց Լոնդոն, ուր առանց նոտաների կատարեց Բեթհովենի սիմֆոնիաները: Հանդիսատեսը նրան ընդունեց շատ զուսպ, գտնելով, որ նոտաների բացակայությունը խախտում է ընդունված կարգը:

Հաջորդ համերգի ժամանակ Վագները իր առջև դրեց նոտատետր, և ունկնդիրները պարգևատրեցին նրան երկարատև ծափահարություններով: Երբ Վագները հեռացավ բեմից, նվագողները զարմանքով նկատեցին, որ նոտակալի վրա Ռոսինիի «Սևիլյան սափրիչի» նոտագրությունն է, ընդ որում՝ շրջված:

Իր կարիերայի սկզբում կոմպոզիտոր Ֆրանց Լեգարը բարեկամների հետ զրույցի ժամանակ ասաց, որ երաժշտության դասեր է տալիս իր տանտիրուհուն, որի դիմաց ձրի ճաշ է ստանում:

— Եվ ի՞նչ, նա ընդունակություններ ցուցաբերո՞ւմ է:

— Անկասկած,— պատասխանեց Լեգարը,— նրան հատկապես հաջողվում են կարկանդակները:

Վիեննացի ծեր կապելմեյստերի մոտ է գալիս մի երիտասարդ և նրան հանձնելով իր ուսուցչի հանձնարարական նամակը, խնդրում է, որ իրեն ձայնակարգություն ուսուցանի: Կապելմեյստերը բացում է ծրարը և կարդում. «Նամակաբերս փուչ երևակայողի մեկն է, խախտվել է այն մտքի վրա, որ երաժշտության մեջ հեղաշրջում է անելու: Նա բոլորովին տաղանդ չունի և, իհարկե, իր ողջ կյանքում ոչ մի կարգին բան չի ստեղծի: Նրա անունը Իոսիֆ Հայդն է»:

Գերհարդ Հաուպտմանը Վենետիկում եղած ժամանակ մտնում է անտիկվարային խանութ:

— Ի՞նչ արժե այս սափորը,— դիմում է նա տիրոջը:

— 6000 լիր,— պատասխանում է վերջինս,— բայց Ձեզ, հարգելի մաեստրո, պատրաստ եմ վաճառել 4000-ով:

Շոյված Հաուպտմանը վճարում է փողը և մտածում. «Այնուամենայնիվ վատ բան չէ նշանավոր լինելը»:

— Իսկ ո՞ւր ուղարկենք սափորը,— հարցնում է վաճառողը:

— «Նացիոնալ» հյուրանոց:

— Ո՞ւմ:



# Ռուսական մատրյոշկա

Ամբողջ աշխարհին հայտնի ռուսական մատրյոշկան կապված է նշանավոր արդյունաբերող և արվեստների երկրպագու Սավվա Մամոնտովի կնոջ՝ Ելիզավետա Մամոնտովայի անվան հետ։

Ե. Մամոնտովան ուներ խաղալիքների խանութ։ Նա էլ հենց առաջարկեց միմյանց մեջ հագնող փայտե տիկնիկներ պատրաստել գեղջկուհու պատկերով։ Տիկնիկը կարմրափայտից պատրաստեց փայտագործ Զվյոզդոչկինը, իսկ նախշազարդեց նկարիչ Միլյուտինը։ Երբ տիկնիկը ցուցադրվեց, գնահատողներից մեկը բացականչեց. «Իսկական Մատրյոնա է»։

Այսպես տիկնիկը ստացավ իր անունը, որը մինչև հիմա էլ պահպանվում է։

1890 թվականից սկսվեց մատրյոշկաների մասսայական արտադրությունը։

1904 թ. Փարիզում անցկացված տնայնագործական արվեստների միջազգային ցուցահանդեսում մատրյոշկան ստացավ ոսկե մեդալ։ Սովորաբար իրար մեջ դրվող մատրյոշկաները լինում են 12 հատ, իսկ Էքսպո—70-ում, որ անցկացվեց Ճապոնիայում, պատրաստվեց հատուկ նմուշ։ Մեկ մետրանոց մատրյոշկան իր մեջ տեղավորել էր 70 տիկնիկ, և նրանցից յուրաքանչյուրը գրավում էր հանդիսատեսների ուշադրությունը իր աննկարագրելի գեղեցկությամբ և գունեղությամբ։

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝ **ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.։

Պատասխանատու քարտուղար՝ ՏՈՆՈՅԱՆ Թ., գեղարվեստական խմբագիր՝ ՄԵԶՈՂՅԱՆ Մ., տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ԱՅՎԱԶՅԱՆ Վ.։




Գծագրի կենտրոնում նշված տառերը և գծիկները ձեզ կօգնեն կարդալու գաղտնագիրը։

Շապիկը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

ԻՆԴԵՔՍ՝ 77806 ԳԻՆԸ՝ 15 կոպ.